# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 7 • 87




*Հանձնված է արտադրության 4.V.87 թ.: Ստորագրված է տպագրության 25.VI.87 թ.: ՎՖ 02464: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66500: Պատվեր՝ 812: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 4.05.87 г. Подписано к печати 25.06.87 г. Формат 70×100 1/16. ВФ 02464. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66500. Заказ 812. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

Շապիկի 1-ին էջին՝ ՌՈՒԴՈԼՖ ԽԱՉԱՏՐՅԱՆ, «ԱՐՎԵՍՏ»


ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

# Վարդիկի գանձը

Հորաքրոջս տղայի անունը Վարդան է, բայց բոլորը Վարդիկ են ասում, այդպես լավ է, և կարճ է, և բան է նշանակում՝ փոքրիկ վարդ: Զարմանալի տղա է այդ փոքրիկ վարդը՝ Վարդիկը, երազող, բաներ հնարող: Պառկում է թախտին, նայում մեր տան պատի մեծ ու տարօրինակ ճաքերին ու ասում. «Տեսնո՞ւմ ես, ոնց որ նավապետ Ֆլինտի շխունան լինի»: Շխունան ի՞նչ է, հարցնում եմ: Շխունան շխունա է, զարմանում է նա, էդ էլ չգիտե՞ս, երեք կայմով առագաստանավ: Գիտեմ, որ նա շատ է կարդում, բայց գիշեր-ցերեկ կարդում է նույն գիրքը՝ «Գանձերի կղզին», և մտածում՝ երբ քիչ էլ մեծանա, անպայման կգնա ու նորից կգտնի այդ գանձերի կղզին: Ո՞վ գիտի, թե այնտեղ դեռ ինչքան գանձեր են մնացել...

Մի օր Վարդիկը եկավ մեր տուն, ձեռքին՝ փայտե մի մեծ մուրճ:

— Տես ի՜նչ եմ շինել,— ասաց:

— Ի՞նչ է,— հարցրի:

— Վա՜յ, գլխի չես ընկնո՞ւմ,— ծիծաղեց:

— Մուրճ է, էլի,— ասացի:

— Մուրճը մուրճ է,— ժպտաց Վարդիկը:

Նա սկսեց մուրճով հարվածել պատերին: Մեր տունը հին է, պատերը ճաքճըքված են, մի տեղ ներս ընկած, մի տեղ ուռած, երևում է՝ մեջը դատարկ է:

— Ըհը՜,— անսպասելի, խորհրդավոր ձայնով ասաց Վարդիկը:

Նա թույլ հարվածեց պատին: Հետո հարվածեց ավելի ուժեղ ու այդպես խըփելով գնաց առաջ: Մուրճի ձայնը այդ ընթացքում մեկ խուլ էր հնչում, մեկ ղնգում էր դատարկ կճուճի նման, արձագանք տալիս:

— Տեսնո՞ւմ ես,— ասաց:

— Ոչինչ էլ չեմ տեսնում:

— Լսո՞ւմ ես,— կրկնեց:

Իսկ ես հակառակվել էի ուզում, չէի հասկանում, թե նրա մտքինը ինչ է:

— Լսում եմ, հետո՞ ինչ:
— Իսկ հիմա կտեսնես: Բայց մի բան իմացիր: Այնտեղ, որտեղ պատը լավ է շարված, քարերը իրար վրա քիփ նըստած են, ձայնը խուլ է հնչում, իսկ որտեղ ձայնը ուժեղ է հնչում, ուրեմն մեջը դատարկ է:
Ես մատով կտտացրեցի Վարդիկի գըլխին ու ասացի.
— Հիմա խո՞ւլ է հնչում, թե ուժեղ...
—Սպասիր, խելքի պուտուկ: Լուրջ բան եմ ասում: Ձեր պատի մեջ դատարկ տեղեր կան, հասկանո՞ւմ ես:
— Չեմ հասկանում: Ասենք դատարկ տեղեր կան, հետո՞ ինչ:
— Ի՜նչ տեսակ տղա ես,— զայրացավ Վարդիկը:— Ո՞նց չես հասկանում: Թե պատի մեջ դատարկ տեղ կա, ուրեմն՝ գաղտնարան է: Դատարկ տեղը ինչի համար է... Իհարկե՜ գանձի: Հիմա ձեր տան պատերի մեջ ով գիտի, թե ինչքան ոսկի կա, ալմաստ, մարգարիտ...
— Հա՜, հա՜, հա՜,— ծիծաղեցի ես,— խելքդ թոցրել ես քո «Գանձերի կղզու» վրա: Այ Վարդիկ, ոսկին, ալմաստը, մարգարիտը ո՞վ է եկել ու դրել մեր պատի մեջ:
— Ո՞վ, ձեր տան տերը: Նա հարուստ է եղել, չէ՞, նրա պապն էլ է հարուստ եղել: Այդ պապը, որ էս տունը շինել է, փո՛ղը, մնացած փո՛ղը ո՞ւր է պահել: Իհարկե՝ պատի մեջ: Հիմա ինքը չկա, ձեր տան տերը տեղը չգիտի: Հո մենք կանք, մենք գիտենք և հիմա կքանդենք և...
Առանց իմ պատասխանը լսելու Վարդիկը սկսեց մուրճով հարվածել պատերին և եկավ ու կանգնեց այն տեղը, որտեղ մուրճի հարվածը ուժեղ էր հնչում: Իսկապես, պատը այդտեղ փոր էր տվել, ուռել, մի տեսակ դուրս ցցվել և ուժեղ արձագանք էր տալիս: Վարդիկը խփեց սկզբում զգույշ, կամաց, հետո համոզվելով, որ մեջը դատարկ է, սկսեց ավելի ուժգին հարվածներ տալ, ականջը պատի արձագանքին: Նրա այդ հարվածներից պատի ճաքը քանի գնաց մեծացավ, տեղ-տեղ ծեփը թափվեց: Բռնեցի Վարդիկի ձեռքը, մի կողմ քաշեցի:
— Ի՞նչ ես անում, կքանդվի:
— Գանձ եմ որոնում:
— Ուրիշ տեղ չկա՞: Որ քանդես, մայրիկս գա, ես ի՞նչ ասեմ:
— Քեռակինը որ գա, գանձը հենց ցույց տամ, բան չի ասի:
— Մեր պատի մեջ բան էլ չկա: Թե որ շատ ես ուզում, գնա ձեր պատերը քանդի:
— Մեր տան պատերը փորձել եմ,— ասաց:— Բոլորն էլ պինդ են, ոչինչ չկա: Համ էլ նոր տան մեջ ի՞նչ գանձ պիտի լինի:
— Չե՛մ թողնի:
— Լսի՛ր,— ասաց:— Հիմա ո՞րն է լավը, ճաքած պատը առանց գանձի, թե՞ քանդված պատը ու հետն էլ հազար, ի՜նչ եմ ասում, տասը, քսան հազար: Որ էդքան փող ունենաք, և այս պատը նորից կսվաղեք, և նոր տուն կառնեք:
— Մեզ պետք չի քո գանձը: Դու պատին ձեռ մի տուր:
— Վա՜յ, ինչ է մնացել, որ ձեռ չտամ, նայիր:
Նա ձեռքը գցեց ու մի մեծ կտոր սվաղ պոկեց: Հետո վերցրեց մուրճը ու նորից սկսեց հարվածել: Պատի ճաքը մեծացավ: Ես բռնեցի թևը, մի կողմ քաշեցի: Վարդիկը իրեն կորցրած, հրեց ինձ: Սըվաղը խուլ թրմփոցով ընկավ հատակին, փոշին նստեց մեզ վրա:
Առաջին քայլը կատարված էր, հիմա մնում էր մի բան՝ առաջ գնալ: Ես էլ հետաքրքրվեցի, մտածելով, որ, իսկապես, եթե գանձ գտնենք, մայրիկս որքան շատ կուրախանա, նույնիսկ նոր տուն կարող ենք գնել, կամ տանիքը կնորոգենք, որը դարձյալ կաթում է, պատերը կսվաղենք, նոր իրեր կառնենք: Չէ՞ որ ընդամենը մի շաբաթ առաջ մայրիկս վաճառեց մեր լավ պահարանը: Պատերազմը նոր է վերջացել, ապրելն էլ դեռ դժվար է:
Մինչ ես այսպես Վարդիկի երազանքով տարված, սեփական երազանքս էի հյուսում, նրա հարվածների տակ պոկվեց ու ցած թափվեց պատի ամբողջ ծեփը, անճոռնի քանդվածք գոյացավ, և երևացին պատի մեծ ու փոքր քարերը, ծուռտիկ շարվածքը: Իսկ շարվածքի մեջ, ուղիղ մեջտեղում, չթրծած մի աղյուս երևաց:
— Ահա, նայիր,— ասաց Վարդիկը, անսպասելի գյուտից շնչահեղձ լինելով:— Ի՞նչ էի ասում: Չորս կողմը քարե շարվածք է, իսկ սա, ահա՛, հում աղյուս է: Դա էլ հենց գաղտնարանի դուռն է, մեջը՝ գանձեր: Հիմա մենք կհանենք այս աղյուսը, ոսկին, ալմաստը, մարգարիտները կհանենք, կկիսենք, կեսը քեզ, չէ՜, քեզ չէ, դու բան չես հասկանում, կեսը քեռակնոջը, կեսն էլ մեզ: Ես ուզում եմ մի շխունա առնել ու Գան-



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ձերի կղզի հասնել...

Ես լուռ, բայց անհամբեր սպասում էի, որ նա հարվածի: Այս անգամ ուզում էի, որ հարվածի, իսկ նա դանդաղում էր:

— Վարդիկ, դե՛, շուտ, խփիր:

— Սպասիր, ձեռքս չի գնում: Մի քիչ նայեմ: Տես, էսպիսի բան մարդու կյանքում մեկ անգամ է պատահում: Հետո, պետք է ինչ-որ խոսքեր ասել...

— Ինչ խոսքեր, խփի՛ր... շո՛ւտ...

Փորձեցի մուրճը ձեռքից խլել: Նա փախցրեց մուրճը, պահեց հետևը ու ժպտալով ասաց.

— Տե՛ս է, չի համբերում: Խելքի պուտուկ: Բա ես ո՞նց եմ էսքան ժամանակ համբերել, հը՞...

— Էնպես ես ասում, կարծես սկզբից գիտեիր, թե մեր տան մեջ գաղտնարան կա, մեջը՝ ոսկի:

— Գիտեի, հաստատ գիտեի: Շատ եմ մտածել: Ի՞նչ հին տուն, որ փորը գցած պատ չունենա, ի՞նչ փորը գցած պատ, որ մեջը գաղտնարան չլինի...

— Դե խփի՜ր, Վարդիկ, խփի՜ր, է՜...

Վարդիկը վերջապես բարձրացրեց մուրճը: Մի հարված, մեկ էլ: Հում աղյուսը մեծ կտոր շաքարի պես փշուր-փշուր եղավ: Մեր աչքերի առաջ բացվեց բավականին լայն մի խոռոչ, բայց... դատարկ: Վարդիկը դողացող ձեռքը ներս մտցրեց: Խորշում, ավելի շուտ՝ խորշի հատակին, ոչինչ չկար, բացի տարիների ընթացքում անօդ տեղ մնալուց սևացած խոտից և աղյուսի կտորներից: Վարդիկը շշմած ինձ նայեց, կարծես ես էի նախօրոք այդ խորշը դատարկել: Ես էլ նրան էի նայում, թե ինչ պիտի ասի:

— Հանե՜լ են,— տնքաց,— հանե՜լ են, ժամանակին հանել են, որ մեր ձեռքը չընկնի, ու տեղը խոտ լցրել:

— Ո՞վ է հանել,— զարմացա ես,— ինչ է, մե՞նք:

— Չէ՜, ով դրել է, նա էլ հանել է...

Գլուխս օրորեցի: Ինչ ասեմ: Ծփոթված նայեցի ոտքերիս տակ, ասես նոր էի նկատում. հատակը ծածկված էր փշրված ծեփով ու աղյուսի կտորտանքով, իրերը կորել էին փոշու մեջ, մենք էլ՝ իրերի հետ: Իսկ դիմացս անճոռնի, ատելի խոռոչն էր, հորաքրոջս տղան՝ Վարդիկը, իր կախարդական մուրճը ձեռքին:

— Բա որ մայրիկս գա, ի՞նչ ասեմ:

— Ասա, որ սրիկաները գանձերը տարել են: Ես ի՞նչ մեղք ունեմ, կամ էլ՝ դու, որ մեզանից առաջ եկել են ու թալանել...

Դրսից, նախասենյակից դռան ձայն լըսեցի: Պարզ էր, մայրիկս աշխատանքից արդեն տուն եկավ: Վարդիկը ականջները խլշեց ու անմիջապես էլ մուրճը խոթեց գրպանը:

— Սո՜ւս, քեռակինը եկավ:

Էլ ի՞նչ սուս, լեզուս արդեն պապանձվել էր: Եվ երբ մայրիկս ներս մըտավ ու տեսնելով քանդվածը, զայրացած հարցրեց, թե այս ի՞նչ բան է, ես չկարողացա պատասխանել:

— Քեռակին, գանձը... Հիմա, ես հիմա... կգամ,— ասաց Վարդիկը և մորս զարմացած ու զայրացած հայացքի տակ դուրս թռավ իր զզվելի մուրճի հետ, իսկ ես մնացի կանգնած, գլուխս կախ, շըփոթված և մտածում էի, թե ինչ հնարեմ նրա զայրույթը մեղմելու համար: Ախր ես Վարդիկի հնարամտությունը չունեի, չէի կարող մի բան հնարել: Եվ ասացի.

— Գիտե՞ս, մա, քիչ առաջ երկրաշարժ եղավ: Չե՞ս հավատում, Վարդիկին հարցրու:

**ՀԵՐՄԱՆ ՀԵՍՍԵ**
(1877—1962)
**Գերմանացի բանաստեղծ, արձակագիր**

## Անցողիկություն

Տերևներն են մեկմեկու հետ
Կենաց ծառից իմ դեմ թափվում,
Օ՜, աշխարհ, հարբած ու գունեղ,
Ինչպես ես ինձ կշտացրել դու:
Ինձ արբեցրել, գերել ես դու,
Կշտացել, հոգնել եմ քեզնից,
Ինչ այսօր բուրում է, շնչում,
Վաղն առհավետ ցնդի պիտի:
Շուտով փչի պիտի քամին
Շիրմի վրա իմ մոխրագույն,
Մայրն իր քնած մանկան վրա
Պիտ խոնարհվի լուռ ու թաքուն:
Կուզեմ տեսնել հայացքը մոր,
Դեմքը տեսնել իմ լուսաստղի,
Մնացյալը կանցնի մի օր,
Կմահանա խինդով աղի:
Եվ մեզ ծնող Հավերժական
Մայրը միայն կապրի անմեռ,
Նա օդի մեջ իր նուրբ ձեռքով
Անունները կգրի մեր:

## Ողջ լեր, տիկին աշխարհ

Աշխարհը փուլ եկավ մի պահ
Հայացքի դեմ մեր սիրահույզ,
Նույնիսկ մահվան հանդեպ հիմա
Մենք չունենք վախ ու տարակույս:

Պետք չէ աշխարհը նախատել,
Նա՝ գունագեղ, բայց և թերի,
Միշտ չեն նրա շուրջը անվերջ
Պարում դյութերը երբեմնի:

Մենք կամուրջին պիտի զատվենք
Հմայքներից նրա անչափ,
Նա մեզ խինդ է տալիս ու վերք,
Սեր է տալիս մեծ ու անափ:

Ո՜ղջ լեր, տիկին աշխարհ, կրկին
Դու պճնվիր ջահել ու կոկ,
Մենք կուշտ ենք քո թե՛ խնդումքից
Եվ թե՛ հառաչից քո վշտոտ:



# Խրատ

Կյանքում ամեն բանի պիտի
Նայես ճղբոր ու քրոջ պես,
Եվ տոգորված նրանց կյանքով,
Չտարբերես՝ սա ինձ, սա՝ քեզ:

Ընկնող աստղի, տերևի հետ
Դու էլ պետք է անցնես, գնաս,
Ու հավատա, որ նրանց պես
Պիտի հառնես ու բարձրանաս:

# Քաղցր ժամեր

Մորին է կարմրում այգում
Քաղցր բույրով լի,
Ինձ այն զգացումն է համակում,
Թե այս կանաչ, բուրող այգով
Հիմա մայրս կանցնի:
Թվում է՝ նորից մանուկ եմ,
Ու երազ է եղել,
Ինչ կորցրել ու վատնել եմ,
Ձեռքից բաց թողել:
Ու դրված է կազմ ու պատրաստ,
Աշխարհն իմ դիմաց,
Այստեղ ամեն ինչ իմն է,
Պարգև է տրված:
Կանգնել, մնում եմ կլանված,
Քայլ իսկ չեմ անում,
Որ չհալվեն ժամն այս քաղցր,
Ու բույրերն՝ այգում:

Գերմաներենից թարգմանեց

ՍԱՄՎԵԼ ՄԿՐՏՉՅԱՆԸ

# Սրինգի երգը

Մութ գիշերով թուփ ու ծառի խորքից անվերջ
Մի տնակի պատուհան էր շողարձակում,
Այնտեղ, ներսում, համատարած խավարի մեջ
Սրնգահարն էր ինքնամփոփ երգն իր հյուսում:

Մի հինավուրց երգ էր ծորում հոգի գերող,
Գիշերվա մեջ այնպես ազնիվ էր այն հնչում.
Ասես լիներ ամենայն վայր հայրենի հող,
Ասես լիներ ամեն ճամփա ծանոթ հնչյուն:

Խորհրդավոր իմաստները տիեզերքի
Ծնչավորված պատկերվեցին նվագի մեջ,
Եվ կամավոր սիրտս տրվեց այդ նուրբ երգին,
Ժամանակներն ընկղմվեցին ներկայի մեջ:

Գերմաներենից թարգմանեց ԱՇՈՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ

**ՖԵՐԻԴՈՆ ՏՈՆԿԱԲՈՆԻ**
**(Իրան, ծնվ. 1981 թ.)**




(երգիծանք)
Փոխադրեց՝ Թադևոս ՏՈՆՈՅԱՆԸ
Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Ծույլ արարած է մարդը: Ինչ արել-չի արել, պատճառը միշտ էլ եղել է ծուլությունը: Մարդը ոչ թե երկու ոտքերի վրա ման գալու ցանկություն ուներ, այլ պարզապես չէր ուզում քայլել չորսի վրա: Նա ուղղակի հոգնել էր իր բոլոր չորս վերջավորություններն անընդհատ չոր, խորդուբորդ, դավադիր հողին դնելու և իր ծանր գլուխը վեր պահելու համար՝ պարանոցը ցավելու չափ ձգելու հարկադրանքից:

Մարդը ոչ թե կենդանիներ վարժեցնել որոշեց, օրինակ՝ ձի, այլ պարզապես ծուլացավ ոտքով ման գալ: Ձիու թամբի վրա, իհարկե, ավելի հանգիստ էր:

Մարդը ոչ թե նավակ պատրաստել որոշեց, այլ պարզապես ինքնուրույն լողալու ցանկություն չուներ: Իսկ հետո, երբ հասկացավ, որ թիավարելը հակասում է իր բնավորությանը, հնարեց մոտորանավակը:

Ավտոմեքենայի ու երկաթգծի հայտնագործությունն նրան անհամեմատ ավելի հեշտ տրվեց. նա հոգնել էր թամբի վրա ճոճվելուց, կառքում կամ սայլում դեսուդեն զարկվելուց:

Ինքնաթիռ ստեղծելու պատճառը ևս, ինչ խոսք, մարդու հնարամտությունը չէր, այլ միայն ու միայն նրա ծուլությունն ու անբանությունը: Նա զզվել էր ավտոմեքենայի մեջ ժամերով նստելուց, «խցանված» ճանապարհներից, դարուփոսերի ու խորդուբորդների մեջ ընկնելուց, բենզին լցնելուց ու յուղին հետևելուց, անվադողեր, ամրափոկեր ու ամորտիզատորներ փոխելուց:

Ուղղաթիռ էլ մարդը հնարեց միայն այն պատճառով, որ նրան ձանձրացրել էին ինքնաթիռի հետ կապված զանազան բարդությունները: Ակարում էր երկինք բարձրանալու համար արագություն հավաքել թռիչքագծում, օդանավակայան փնտրել, գտնելուց հետո էլ դեռ երկրնքում պտույտներ կատարել ու սպասել վայրէջքի թույլտվությանը: Ուղղաթիռն ավելի էր համապատասխանում նրա ծույլ էությանը, այն կարող է վայրէջք կատարել և օդ բարձրանալ որտեղ որ օդաչուի խելքին փչեր:

Ցանկացած ամենաէժան հայտնագործությունից մինչև ամենահանճարեղը՝ մարդկային անբանության ու ծուլության վկայությունն է. լվացքի մեքենա, նեյլոնե վերնաշապիկ, միայն մեկ անգամ օգտագործելու ափսեներ (ուշադրություն դարձրեք, և դա այն դեպքում, երբ գոյություն ունի ամանեղեն լվացող մեքենա), թղթե բաժակներ ու անձեռոցիկներ, վերելակ: Այո՛, այո՛, ամենահամոզիչ օրինակը վերելակն է: Բայց պե՞տք է, որ ծուլությունն իր սահմաններն ունենա: Լա՛վ, գլուխը քա՛րը, բարձրանալը դեռ ոչինչ, բայց արի ու տես՝ մարդկային արարածն այնքան է ծույլ ու անբան, որ ներքև իջնելիս էլ է վերելակից օգտվում:

Մարդը չէր ուզում տեղից վեր կենալ, այցելել իր բարեկամներին կամ սեփական գործերը կարգավորել: Դրա համար էլ հնարեց փոստը: Բայց քանի որ ընտիպված էր գնալ փոստատուն, նամականիշ գնել, լեզվով թրջել ու կպցնել ծրարին և գցել փոստարկղը, այս ամենն անել նույնպես ալարեց ու այդ պատճառով էլ ստեղծեց հեռախոսը: Արդեն կարելի էր ո՛չ գրել, ո՛չ շարժվել: Այս գյուտը այնքան դուր եկավ նրա ծույլ էությանը, որ սկսեց օգտագործել այլ նպատակ-

ներով ևս. հեռախոսային գնումներ, հեռախոսային վաճառք, հեռախոսային ուսուցում, նույնիսկ հեռախոսային սեր և ամուսնություն:

Մարդկությունը հոգնեց թանաքամանի մեջ գրիչ թաթախելուց և հայտնագործեց ինքնահոսը: Բայց այդպիսի գրիչով գրելը ևս չափից ավելի հոգնեցուցիչ թվաց, և լույս ընկավ գրամեքենան: Միայն թե մարդուն այդ հրաշքն էլ չբավարարեց. նրա նուրբ մատները հոգնեցին թխկթխկացնելուց, և նա ստեղծեց էլեկտրական գրամեքենան, իսկ հետո՝ նաև էլեկտրոնայինը: Եվ որպեսզի միևնույն բանը չմեքենագրի մի քանի անգամ, հղացավ պատճենահանող թուղթը:

Մարդն ալարեց նորություններ իմանալու համար այս ու այն կողմ ընկնել և հնարեց թերթը: Բայց այս ծայրաստիճան անբան արարածը ծուլանում է նաև թերթ կարդալ, և հայտնագործում է ռադիոն: Իսկ հետո նրան ձանձրացրեց անվերջ նստել-նստել ու նայել այլանդակ արկղին, որի միջից դուրս են թռչում ինչ-որ մարդկային ճիչեր ու երաժշտություն: Մի կողմից էլ ալարում էր վե՛ր կենալ, հագնվե՛լ, տնից դո՛ւրս գալ, որևիցե տրանսպո՛րտ նստել, հե՛րթ կանգնել, տո՛մս գնել, մտնել կինոթատրոն ու ֆիլմ դիտել: Եվ կրկին ու կրկին այնքան ծուլացավ, որ հնարեց հեռուստացույցը:

Բացի իր անմիջական պարտականություններից, հեռուստացույցն սկսեց կատարել հայրիկի ու մայրիկի, տատիկի ու պապիկի պարտականություններ: Հեռուստացույցը և՛ ուսուցիչ է, և՛ բարեկամ, և՛ ծաղրածու՝ ինչ որ մտքովդ անցնի: Երբ իրար գլխի են հավաքվում մի քանի մարդ, և խոսակցության նյութ գտնելու համար ծուլանում են ուղեղներին զոռ տալ, հեռուստացույցն է լուծում այդ դժվար խնդիրը: Բոլորը լռում են՝ այդ հսկա արկղին կպած: Հո գիտենք, որ մարդու համար ամենադժվար բանը մտածելն է: Մտածելը խիստ տհաճ զբաղմունք է: Հեռուստացույցը նրան ազատում է ուղեղ լարելու ծանր անհրաժեշտությունից և հենց դրանով էլ՝ գլխացավից: Հեռուստացույցի առկայությամբ մտածելու կարիք չկա ընդհանրապես: Այդ իսկ պատճառով բուտերբրոդի ու հագուստի ճարմանդի հետ միասին այն հավասարապես կարելի է համարել քաղաքակրթության պատմության մեծագույն հայտնագործություններից մեկը:

Ոչ-ոչ, ոչ մի դեպքում մի անտեսեք ճարմանդի դերը: Այն թեկուզ իր չափերով զիջում է հեռուստացույցին, բայց ոչ երբեք՝ նշանակությամբ: Կոճակ կոճկելն ու արձակելը, անկեղծ ասած, տաժանակիր աշխատանք է: Ու մեկ էլ՝ հոպ, և կայծակ-ճարմանդը ձեզ ազատում է անհաշիվ կոճակների գլուխկոտրուկից՝ հատկապես երբ շտապում եք:

Կրկնում եմ, որ կողմ էլ աչք ես գցում, մարդկային ծուլության ու անբանության վառ դրսևորումներ ես տեսնում: Ցանկացած բնագավառում: Մարդիկ ծուլացան ցանել ու հնձել, եփել ու թափել, կարել ու կառուցել և այլն, և այլն: Ու մի օր էլ հավաքվեցին, և մեկը, որ նրանցից համեմատաբար ավելի խելացի էր, այսինքն՝ ամենածույլը, առաջարկեց. «Եկեք այսպես անենք, դու հաց թխիր, դու կոշիկ կարիր, դու դարբնություն արա, ծառ դու կտրիր, դու տներ կառուցիր: Ես էլ կհետևեմ ձեզ, որպեսզի լավ աշխատեք ու իրար և, որ գլխավորն է՝ ինձ, չխաբեք»: Բոլորն իրենք իրենց մտածեցին. «Սատանան տանի, ես օրական իմ մի քանի ժամը կաշխատեմ, փոխարենը հո գիտեմ, որ հետո ոչինչ չեմ անի:»:

Եվ բոլորը շատ գոհ մնացին:

Այսպես տեղի ունեցավ մարդկության պատմության մեջ ամենամեծ հեղաշրջումը՝ աշխատանքի բաժանումը, որ զարգացավ-զարգացավ այնքան, մինչև որ այլևս զարգանալու տեղ չմնաց: Բայց մարդկային ծուլությունը միշտ էլ մի ելք գտնում է:

Մարդը մտածեց. «Թե որ միշտ միևնույն հիմար գործն եմ անում, օրինակ՝ առավոտից իրիկուն մուրճն առած մեխ եմ թխկթխկացնում, ավելի լավ չի՞ լինի իմ փոխարեն այդ գործն անող մի բան հնարեմ»:

Եվ լույս ընկավ մեքենայացումը:

Կամ վերցնենք քաղաքականությունը: Մարդը ծուլացավ կատարել իր հասարակական պարտականությունները: Սկսեց լիազորներ ընտրել, որոնք էլ հաճույքով համաձայնեցին կարգի գցել նրա գործերը: Բայց նրանք էլ, ինչ ուզում ես ասա, մարդ էին, հետևապես՝ ծույլ արարածներ: Լիազորներն էլ իրենց հերթին նույն բանը հանձնարարեցին իրենց ծանոթներին: Սրանք էլ, ծուլության ու անբանության պատճառով, այդ պար-



տականությունները փաթաթեցին մեկ ուրիշի վզին, որը կամա-ակամա ստիպված հանձն առավ: Բայց ի վերջո սրան էլ ամեն ինչ ձանձրացրեց:

«Եկեք հերթ սահմանենք: Թող մի քանի տարի որևէ մեկը միայնակ կրի այդ բեռը: Վերջապես չի կարելի, որ մի դժբախտ մարդ ծնված օրից մինչև մահ մի գլուխ աշխատի ու աշխատի, իսկ մյուսները ամբողջ կյանքում անհոգ թրև գան»: Եվ պարզամիտ ինչ-որ մեկին գտնելով, իրենց հոգսերի ու գլխացավանքների բեռը չորս տարով նրա շալակը տվեցին: Ժամկետը լրանալուն պես այդ խեղճ մարդն սկսեց աղերսել. «Ես չորս տարի աշխատել ու կատարել եմ իմ բոլոր խոստումները: Հիմա մի քառասուն տարի ուզում եմ հանգստանալ»:

Բայց մարդիկ ալարում էին փնտրել նման մի այլ տարաբախտի և զանազան երդումներով ու խոստումներով այս մեկին կաշառում ու համոզում էին մի հերթ

էլ աշխատել: Կարծում եք մարդիկ հասկանո՞ւմ էին, թե ինչ ծանր է նրա համար: Հաջորդ ժամկետից հետո կրկին սկսվեցին հառաչանքներն ու աղաչանքները. «Մի անգամ էլ մնա, ի՞նչ կլինի, մի վերջին անգամ»:

Բայց այդ ժամկետն էլ լրանալուն պես, մարդիկ՝ խիղճ ու ամոթ կորցրած, առանց այլևայլության հայտարարեցին այդ տարաբախտին. «Դու մեզ շատ ես դուր գալիս, և մենք ուզում ենք, որ մեր պրեզիդենտը լինես մշտապես»:

Պարզամիտը ծայրաստիճան վրդովվեց, նա անիծում էր ժամանակը, երկիրը և իր բախտը: Բայց նրան ոչինչ չէր մնում, քան համաձայնել: Ճիշտն ասած, ախր նա էլ մարդ էր, ուրեմն և՝ ծույլ: Եվ հիմա, երբ երկար տարիների ընթացքում նա վարժվել ու սովորել էր պրեզիդենտական պալատին, ծուլանում էր գործը փոխել:

Սակայն հանգիստ թողնենք քաղաքականությունը: Ավելի լավ է հաճելի բաներից խոսենք:

Ո՞րն է մարդու ամենասիրելի զվարճությունը: Խմելը: Մարդն ալարեց անծանոթ աշխարհամասեր հայտնագործել, ճեղքել-անցնել վայրի ու վտանգավոր անտառները, նվաճել բարձունքներ և այդ ամենից հաճույք ստանալ: Եվ նա մի հայտնագործություն կատարեց, որի շնորհիվ կարելի էր առանց տնից դուրս գալու, առանց մի քայլ անելու, հաճելի հուզումներ ու գրգիռներ զգալ. մարդը ստեղծեց գինին: Կարելի է առանց սրխալվելու ասել, որ գինին նրա ամենահաջող հայտնագործություններից մեկն է: Ինչ-որ բան նախաձեռնելու անհրաժեշտություն չկա, գինին ինքը քո փոխարեն ամեն ինչ կանի: Սկզբում քեզ եռանդ կներշնչի, որպեսզի ժամերով, առանց հոգնելու կարողանաս պարել, հոհռալ, լաց լինել, երգել, ոռնալ, կարճ ասած, ինչ-որ խելքիդ փչի: Հետո, որպեսզի չափից ավելի ուժասպառ չլինես, քեզ կթուլացնի, կհանգստացնի, կդարձնի անտարբեր ու անկամ (օ՜, որքան է մարդը սիրում այդ վիճակը) և հետո բարեհաջող կքնեցնի:

Հա, հիշեցի: Թե որ մարդը ծույլ չլիներ, ուրեմն էլ ինչո՞ւ պիտի քնաբեր դեղահաբեր պատրաստեր: Բայց այդ արարածն այն աստիճան անբան է, որ չի ուզում փոքր-ինչ անքուն մնալ ու անկողնում մի կողքից մյուսը շրջվել:

Ոչ մեկի համար էլ գաղտնիք չէ, որ սպորտը մարդկանց մեծ հաճույք է պատճառում: Ընդունված է համարել, որ սպորտսմենները մարդկության ամենաճարպիկ ներկայացուցիչներն են: Թվում է, թե սպորտն ու ծուլությունն անհամատեղելի են: Համարձակվում եմ ձեզ հավատացնել, որ դա մոլորություն է: Իմ կարծիքով սպորտսմենները պատկանում են ամենաանբան մարդկանց կարգին: Թե որ այլ կերպ լիներ, էլ ինչո՞ւ են նրանք լեռներում այդքան ամբարձիչ մեքենաներ, ճոպանուղիներ, ֆունիկուլյորներ և այլ հարմարություններ տեղադրում:

Քանի որ խոսք գնաց սպորտի մասին, մի օրինակ բերեմ: Ամեն առավոտ դուք մարմնամարզությամբ եք զբաղվում: Մի հրաշալի օր ինքներդ ձեզ ասում եք. «Այսօր ուշ եմ արթնացել, վարժությունների ժամանակ չկա»: Հաջորդ առավոտ էլ ժամանակը չի հերիքում. «Այսօր քեֆս ոնց-որ տեղը չի»: Երրորդ օրն էլ եք ինչ-որ պատրվակ գտնում. «Իրիկունը քիչ-միչ քայլել եմ, ի՞նչ վարժություն, ի՞նչ բան...»: Այդպես առավոտյան մարմնամարզությունից էլ ձեռք կքաշեք: Բայց եթե երբեք սպորտով չեք զբաղվել և հանկարծ վճռել եք մարզվել, ուրեմն՝ անպայման կմտածեք. «Լավ, այսօր ուրբաթ է, շաբաթվա վերջ, երկուշաբթի օրվանից կսկսեմ»:

Եթե ցանկություն ունեք սազ նվագել կամ մաթեմատիկա սովորել, նույնպես ինչ-որ ժամկետ եք դնում. «Կսկսեմ ամսվա սկզբից»: Իսկ եթե նման ցանկություն եք ունեցել ձմռանը, անպայման կհայտարարեք. «Գարնանը կսկսեմ»:

Կատարենք մի փոքրիկ փիլիսոփայական շեղում ու դրանով էլ վերջացնենք մեր շաղակրատանքը (շարունակելու ցանկություն չկա):

Ուշադրություն դարձրե՞լ եք այն փաստի վրա, որ երբ մարդը ծուլանում է ապրել, իր կյանքին վերջ է տալիս ինքնասպանությամբ:

Ինձ չի հուզում, թե ուրիշներն ինչն են առաջընթացի ուժը համարում: Ես կարծում եմ, որ այդ ուժը ծուլությունն է, միայն ու միայն ծուլությունն ու ծուլությունից բացի էլ ուրիշ ոչինչ:

Չգիտեմ, թե որտեղ եմ կարդացել կամ լսել. «Թե անբանները չլինեին, մենք մինչև հիմա քարանձավներում ու ծառերի վրա կապրեինք»:



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

●●●

Լեռ մի բարձրացիր,
Մեկ է, քո չնչին ուժով
Դու չես հասնի բարձունքին...
Լեռ մի բարձրացիր,
Ու թող ծովը գա
Ու հասնի քեզ:
Ու լողացիր նրա ջրերում,
Ու զորացիր.
Այդ ժամանակ դու բարձրացիր,
Որ քո բարձրանալը
Արդար լինի...

●●●

Ես նայում եմ ինձ հայելու մեջ՝
Նա էլ ինձ է նայում,
Ծիծաղում եմ ես՝
Նա էլ է ծիծաղում,
Կատակներ եմ անում՝
Նա էլ է կատակում,
Ու թվում է նա ինձնից
Ավելի հզոր է ու կայուն:
Ու նա ասում է ինձ.
«Քեզանից ուժեղն էլ կա»:
Ու ես չեմ ծիծաղում թույլերի վրա:
Եվ նա ասում է ինձ.
«Չարը միշտ իր ստվերից է պարտվում»:

ԱՐՄԵՆ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Երևան, № 88 դպրոց, 7-րդ դաս.

## Ապրել եմ ուզում

Ջերմությունն ու վառ լույսը արևի
Գրկել, տաքանալ ու զգալ եմ ուզում:
Ուզում եմ ապրել,
Ապրել, վայելել աշխարհում այս մեծ
Գեթ հենց մեկ անգամ կյանքը ինձ տրված:
Ապրել...
Բայց ինչպե՞ս,
Նրանց պե՞ս, ովքեր
Դարձել են ստրուկն իրենց կրքերի:
Նրանց պե՞ս, ովքեր
Ապրում են որպես խլուրդներ հողում:
Նրանց պե՞ս, ովքեր
Առնետի նման
Դարձել են կեղտոտ վարակի մի բույն,
Ովքեր ապրում են, ինչպես բորենի,
Որոնց հոգու մեջ կամ էլ արյունի
Չարի և բարու թեժ գոտեմարտում
Չարիքն է հաղթել,
Սեղմել կոկորդը արդարի, բարու
Եվ իրեն բարի, արդար հռչակել:
Սրանց պե՞ս ապրել,
Թե՞ ապրել որպես լույս՝ խավարի մեջ
Եվ ճիչ՝ անդորրում:
Փոթորիկներին ծով ելնել մենակ,
Կռվել, մարտնչել, պայքարել ըմբոստ,
Պայքարել, ընկնել կռվում այդ համառ:

●●●

Անցնում եմ ես քո արձակ դաշտերի
Ծաղկած վարդագույն գորգի վրայով,
Անուշ բուրմունքն է լցվել վարդերի,
Եվ քո դաշտերն են ողողվել լույսով:

Բարձր լեռների զով անտառներից
Խավարն է իջնում մեղմ շշնջալով,
Լույսդ հրավառ մթնում է նորից
Զեփյուռի բերած հովերի շնչով:

Եվ ես քայլում եմ լույսը կրծքիս տակ,
Գրիչս՝ լապտեր բռնած իմ ձեռքին,
Որ լուսավորեմ վարդերս հատ-հատ
Եվ նոր բուրմունք տամ բացվող կոկոնին:

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹԱՐՎԵՐԴՅԱՆ
Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 8-րդ դասարան

# Անուշ Հայաստան

Սիրում եմ քեզ, իմ Հայաստան,
Ինչպես մորը կսիրեն...
Թե ոտքդ հանկարծ դեմ առնի քարի,
Ու ես այդ պահին օգնության չգամ,
Իմացիր, որ ես աշխարհում չկամ:
Թե ծարավ լինես, անգին Հայաստան,
Թե հոգուս աղբյուրը չհանեմ ու տամ,
Թե ծով չդառնամ, անգին Հայաստան,
Իմացիր, որ ես աշխարհում չկամ:
Իսկ թե թշնամին հարձակվի վրադ
Ու ցանկանա քեզ ուժով տիրանալ,
Թե զենք չունենամ, անզեն ես կգամ,
Թե չգամ հանկարծ, անուշ Հայաստան,
Իմացիր, որ ես այլևս չկամ:

ԼՈՒՍԻՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ
Երևան 8-րդ դասարան



ՋԱՎԱՀԻՐ ՍԱՐԳՍՅԱՆ, 14 տ.
Արթիկի շրջ., գ. Արևշատ



«ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ» ԿԱՐԵՆ ԲԵԳԼԱՐՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջ., գ. Հոկտեմբեր



ՄԱՐԻՆԵ ՀԱԿՈԲՅԱՆ, 11 տ. Երևան





ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# Հայկական հնագույն արվեստը, բանահյուսությունը, կրոնը

Հայկական լեռնաշխարհի տարածքում, ինչպես առաջին զրույցներից գիտենք, անհիշելի ժամանակներից մարդիկ են բնակվել: Սկզբից նրանք գործիքներ ու այլ իրեր պատրաստում էին քարից, ոսկորից, իսկ հետո նաև մետաղներից՝ պղնձից, բրոնզից, երկաթից: Զարդեր պատրաստում էին նաև ոսկուց, արծաթից, ազնիվ քարերից:

Մ. թ. ա. 3-րդ հազարամյակում, երբ Լեռնաշխարհի կյանքում գլխավոր դերն անցավ հայկական ցեղերին, արդեն գրեթե ամբողջ Մեծ Հայքի տարածքում ստեղծվում էր հայկական մշակույթ ու արվեստ:

Հնուց ի վեր մինչև Երվանդունիները և հետագա ժամանակները Մեծ Հայքում տնտեսության հիմնական տեսակներն էին հողագործությունը, անասնապահությունը և արհեստները: Արհեստներից տարածված էր բրուտագործությունը: Հայ ժողովրդի ամբողջ պատմության ընթացքում հայ բրուտները կավից պատրաստել են տարբեր տեսակ խեցեղեն՝ ճաշի ու ջրի ամաններ, հացահատիկ ու գինի պահելու կարասներ, փոքր արձաններ և այլն: Հայերի մեջ հնուց ի վեր զարգանում էր նաև ձևավոր քարագործությունը, ինչպես և մետաղաձուլումն ու մետաղների մշակման արհեստները:

Երբ մարդը իր ամենօրյա օգտագործման գործիքները, պիտույքները սկսում է նաև գեղեցկացնել, զարդարել, գոյանում է արվեստ: Այդպես հայ բրուտները իրենց պատրաստած կարասների, կըճուճների, կժերի ու դորակների (շիշ հիշեցնող կավե անոթներ) վրա զանազան գեղեցիկ նախշեր էին անում, գույներ տալիս: Սա արդեն արվեստ էր:

Նկարչական ու զարդարարական արվեստի հնագույն ձևերից են ժայռապատկերները: Մեծ Հայքի շատ լեռներում ժայռերի, քարերի վրա կան եղջերուների, այծերի, մարդկանց, առասպելական հերոսների պատկերներ: Դրանք, ինչպես գիտենք, գրի հնագույն տեսակներ են (պատկերագիր) և միաժամանակ՝ արվեստի շատ հետաքրքիր նմուշներ: Հայերը ժայռապատկերներ նկարել են հընագույն ժամանակներից մինչև միջնադար: Քրիստոնեական շրջանում էլ այդ արվեստը հայերի մեջ շարունակվել է, և ժայռապատկերներ են փորագրել նաև եկեղեցիների սրբատաշ պատերի վրա (օրինակ, Պտղնի գյուղի վանքի պատին):

Հայաստանում հնուց ի վեր պատրաստում էին արձաններ ու արձանիկներ՝ կավից, քարից, փայտից, ինչպես և՝ մետաղներից: Մեծ Հայքի հին հողաշերտերում գտնվել են մարդկանց, հին աստվածների, ինչպես և կենդանիների՝ այծի, ձիու, շան, առյուծի շատ արձանիկներ:

Արվեստի մի ճյուղն էլ ճարտարապետությունն է: Մ. թ. ա. 3-րդ հազարամյակում Արարատյան դաշտավայրում կառուցում էին պարզունակ տներ: Օրինակ, Շենգավիթում (Երևան) գտնվեց մի մեծ բնակատեղի: Այդտեղ անտաշ քարերից կառուցված է պարիսպ՝ իր աշտարակներով, պարսպի ներսում տներ են եղել, բայց՝ անկանոն դասավորված: Հայաստանում կառուցել են նաև կլոր՝ կոնաձև տներ: Սրանք վաղ հայկական ճարտարապետության նմուշներից էին:

Հայկական մշակույթն ու արվեստը ծաղկեցին հատկապես Վանի Արարատյան հայոց թագավորության ժամանակ: Հզոր պետականությունը նպաստեց հայ մշակույթի արագ զարգացմանը:

Այդ ժամանակներից մեզ են հասել շատ արձանիկներ, բարձրաքանդակներ, վիմանկարներ, խեցեղեն, տնային գործածության գեղեցիկ իրեր, զարդեր և այլն: Ուշագրավ են զանազան առասպելական կենդանիների ու թռչունների ար-

ձանները ու արձանիկները: Դրանցից են արծվառյուծի (արծվի գլխով առյուծ) ու արծվամարդու (արծվի գլխով մարդ), ինչպես և մարդառյուծի (մարդու գլխով առյուծ) արձանները:

Առյուծն, առհասարակ, կարևոր տեղ է ունեցել Արարատի թագավորության արվեստում: Առյուծը Հայկ աստծու խորհրդանիշներից մեկն էր: Պալատների պատերին հաճախ էին առյուծներ նկարում: Որմնանկարների մեջ կարևոր տեղ ունեն նաև ցուլը:

Որմնանկարները մեծ մասամբ արվում էին կապույտ ու կարմիր հաճելի գույներով, երբեմն այլ գույնի ներկեր էլ էին գործածում:

Նկարում էին նաև ամենօրյա կյանքի տեսարաններ. մի տեղ հովիվը ոչխարները սարն է տանում, մի այլ տեղ՝ կովեր են կամ եղջերուներ: Նկարների մեջ ուշագրավ են հին հայկական ռազմիկների գունավոր պատկերները՝ այն օրերի զգեստներով:

Այդ ժամանակաշրջանի, ինչպես և հետագա դարերի հայկական կերպարվեստում կարևոր տեղ ուներ կյանքի ծառը (սոսին), որը սուրբ էր համարվում: Այդ ծառը հաճախ երեք ճյուղով էր նկարվում, երբեմն բազմաճյուղ: Եվ միշտ նրա մոտ քուրմ է կանգնած: Շատ նկարներում քուրմը բռնել է եռաճյուղ ծառի ոստը: Դրանք հայերի՝ ամենահին ժամանակների ծառապաշտության և ծառագուշակության պատկերներն են, որոնց մասին Խորենացին այսպես է գրել. «Տերևների հանդարտ կամ սաստիկ շարժումից, նայած քամու ուժին և ուղղությանը, մեր Հայոց աշխարհում սովոր էին գուշակություններ անել երկար ժամանակ»:

Արվեստի գեղեցիկ նմուշներ են բրոնզյա զարդարուն սաղավարտները, վահանները, կապարճները (նետերի ամաններ), գավաթները: Սաղավարտների ու վահանների վրա գեղեցիկ պատկերներ էին դրվագում, երբեմն՝ ռազմի տեսարան, մարտակառք, հաճախ՝ առյուծներ, եղջերուներ:

Շքեղ էր ու քանդակազարդ թագավորական գահը: Իսկ ամենաշքեղը Արդինի (Մուսասիրի) հայկական տաճարում եղած արձաններն, զարդերն ու զարդակիր իրերն էին: Այնտեղ եղել են նաև ոսկե ու արծաթե շքեղ վահաններ, հայ թագավորների բրոնզե արձաններ, կենդանիների գեղեցիկ քանդակներ և այլն: Հոյակապ էր Արդինիի տաճարի ճարտարապետությունը. վեց սյուների վրա եռանկյունաձև ճակտոնն էր, որի գագաթը զարդարում էր թրաձև տերևը՝ սուրբ ծառի նշանը. դա նաև Հայկի խորհրդանիշն էր:

Այդպիսի ձև ունեցող տաճարներ ավելի ուշ հույներն էին կառուցում: Հայկական հետագա շրջանի տաճարներից դրան նման է Գառնիի հեթանոսական տաճարի ճարտարապետությունը (1-ին դար): Արդինիի տաճարի մեզ հասած պատկերը ցույց է տալիս, որ Արարատի թագավորության ժամանակներում հայկական ճարտարապետությունը շատ զարգացած է եղել:

**Ճարտարապետա կ ա ն** **ա ռ ո ւ մ ո վ**



Արծաթյա պտյակ (մ. թ. ա. 6-րդ դար՝ Երվանդունիների ժամանակաշրջան)



Որմնանկար՝ Արարատի թագավորության շրջանից. քուրմը՝ ձեռքին սուրբ ծառի խորհրդանիշը

արժեքավոր են նաև Արարատի թագավորության ժամանակ կառուցված Վանի, Էրեբունիի, Թեշիբայինիի և այլ բերդերն ու պալատները: Այժմյան Կարմիր բլուրի վրա կառուցված Թեշիբ աստծու անունը կրող հսկա բերդն ունեցել է 150 սենյակ: Բերդի տպավորիչ մուտքը զարդարում էին երկու մեծ աշտարակները: Բերդն ուներ երկու պարիսպ: Կավի ու հարդի շաղախից հայ վարպետներն աղյուսներ էին պատրաստում և դրանցով կառուցում պարիսպներ:

Արարատի թագավորության ժամանակ, ինչպես գիտենք, հայերի գերագույն աստվածը Հայկն էր, որը որոշ բարբառներում **Խայկ** էր կոչվում, իսկ սեպագրերում ուներ **Հալդ** և **Խալդ** ձևերը: Հաջորդ երկու կարևոր աստվածներն էին Թեշիբը (փոթորկի ու պատերազմի աստված) և Շիվին (արևի աստված): Այս երեք գլխավոր աստվածներից բացի կային նաև մոտ 50 ուրիշ աստվածներ, այդ թվում՝ Բագբարտուն՝ Հայկի կինը, Արնին, Արտուարասին, Արազան, Էլիբուրմին և ուրիշներ:

Արարատյան հայոց թագավորությանը հաջորդած Երվանդունիների թագավորության ժամանակ, երբ Հայքը մերթ անկախ էր լինում, մերթ ընկնում իրանյան Մարաստանի կամ Պարսկաստանի գերիշխանության տակ, մշակույթի զարգացումը ինչ-որ չափով դանդաղեց, և շրջակա բոլոր երկրների, այդ թվում Հայքի վրա տարածվող իրանյան ազդեցությունը որոշ դեր կատարեց: Հայկական մշակույթը, հատկապես ճարտարապետությունը, զարդը, քանդակը, անշուշտ, շարունակում էին պահպանել իրենց ավանդները, բայց և նոր ժամանակները իրենց գործը կատարում էին: Երվանդունիների վաղ ժամանակաշրջանից գտնվել են արձաններ, դրամներ՝ հայ տիրակալների պատկերներով և այլն: Հատկապես գեղեցիկ են այդ ժամանակ պատրաստված արծաթյա պտյակները (տես նկարը):

Ինչպես արդեն գիտենք, փոփոխություն կրեց նաև հայկական հեթանոսական կրոնը: Իրանյան ազդեցության տակ նրա ծագման առաջին շրջանում հայ ժողովրդի մեջ պահպանվում էին Հայկի, Թեշիբի և մյուսների պաշտամունքը, բայց աստիճանաբար հայերի դիցարանում սկսեց գլխավոր դեր կատարել Արամազդը: Հայկ աստվածը հետզհետե մոռացվում էր, նրա հիշատակը մնաց աստղային այն համաստեղության անվան մեջ, որը դեռ երկար ժամանակ Հայկ էր կոչվում:

Ապա հայերի մեջ սկսեցին կարևոր դեր կատարել Անահիտ, Աստղիկ, Վա-

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Տրամվայ

**Եվ տրամվայն ասաց.**
**— Ես հոգնել եմ,**
**Բավական է, որքան**
**Ձեզ օգնել եմ,**
**Էլ այս գծած ճամփով**
**Ես չեմ գնա:**
**Եվ զարմացան մարդիկ.**
**— Գի՞ժ ես, ի՞նչ ես:**
**Եվ զայրացան մարդիկ.**
**— Սրան դու տես,**
**Փողոցի մեջ կանգնած**
**Հո չե՞նք մնա:**

հագն, Տիր աստվածուհիներն ու աստվածները, որոնցում շատ գծեր հիշեցնում են հայոց հնագույն աստվածներին, իսկ որոշ գծեր էլ՝ իրանյան և հունական պաշտամունքի արտահայտություններ էին:

Արվեստի մի ճյուղն էլ գեղարվեստական բանահյուսությունն է: Հնուց ի վեր հայ ժողովուրդը ստեղծել է զրույցներ, դյուցազնավեպեր, երգեր: Օրինակ, հայկական «Սասնա ծռեր» («Սասունցի Դավիթ») ժողովրդական դյուցազնավեպը ծնվել է հայոց Ռուշա 2-րդ թագավորի ժամանակներում, երբ մ. թ. ա. 681 թ. Ասորեստանի Նինվե քաղաքում Սենեքերիմ թագավորի երկու որդիները սպանեցին իրենց հորը և փախան Հայաստան: Նրանք, ինչպես հիշում ենք, ապաստանեցին Սասունում, և Հայքի այս հարավային գավառում էլ ժողովուրդը ստեղծեց զրույց նրանց մասին: Դա հայոց դյուցազնավեպի «Սանասար և Բաղդասար» կոչվող առաջին ճյուղն է: Հետագայում, երբ Հայաստանի վրա արշավում էին արաբները, այդ հինավուրց զրույցը ժողովրդի բերանում մի քիչ փոփոխվեց: Օրինակ, Ասորեստանի թագավորը փոխարինվեց Բաղդադի խալիֆով: Բայց վայրը նույնը մնաց՝ Միջագետքը: Բաղդադն էլ հին Նինվեից հեռու չէ:

Եթե զրույցի հին տարբերակում Սանասար ու Ադրամելիք եղբայրները սպանում են Նինվեում նստող բռնակալ թագավորին, ապա նոր տարբերակում Սանասարն ու Բաղդասարը սպանում են Բաղդադում նստող բռնակալ խալիֆին: Երկու դեպքում էլ եղբայրները Հայք են գալիս:

Երվանդունիների ժամանակաշրջանում՝ մ. թ. ա. 6—5-րդ դարերում, և հետո տարածված է եղել Վահագն աստծու մասին բանաստեղծական ասքը, որի մի փոքր հատվածը, որտեղ նկարագրված է Վահագնի ծնունդը, մեզ է հասել Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» գրքից: Ահա այդ հատվածը՝ հայոց հին լեզվից թարգմանված նորի.

Երկնում էր երկինքը, երկնում էր երկիրը,
Երկնում էր նաև ծիրանի ծովը:
Ծովում երկունքի մեջ էր կարմիր
եղեգնիկը՝
Եղեգնի փողից ծուխ էր դուրս գալիս,
Եղեգնի փողից բոց էր դուրս գալիս,
Եվ բոցի միջից դուրս էր վազում
Ոսկեծամ մի պատանեկիկ:
Նա կրակե մազեր ուներ,
Նաև բոց մորուք ուներ,
Եվ աչքերը արեգակներ էին:

Այս երգի մեջ շատ հին դարերի պատկերացումներ կան. ծովից, երկնքից, եղեգնիկից ծխով ու կրակով դյուցազնի ծննդյան պատկերացումը ժողովրդին հարազատ ու հասկանալի էր և՛ Երվանդունիներից շատ դարեր առաջ, և՛ նրանցից հետո: Հավանական է, որ այն սկզբից նվիրված է եղել Արարատի թագավորության ժամանակաշրջանի կամ հայոց ավելի հին աստվածներից մեկի ծննդյանը, իսկ Երվանդունիների ժամանակ գուսանները (ժողովրդական բանաստեղծները) վերագրել են Վահագնին, որն այդ ժամանակաշրջանի աստվածություն է: Հայերի մեջ զրույցներ էին հյուսվել նաև իրենց սիրելի ցեղապետերի, թագավորների մասին, և դրանք պահպանվել են շատ երկար ժամանակ. դրանցից են, ինչպես գիտենք, Հայկ-Հալդ աստվածացված հայոց ցեղապետի, հզոր թագավորներ Արամի, Արայի (Արգիշտիի) գործերի մասին պատմող զրույցները:

(շարունակելի)



Տրամվայը ճչաց.
— Իմ պետքը չէ:
Ի՞նչ է, հո ձեզ համար
Կարուսել չե՞մ,
Որ նույն գծով անվերջ
Գնամ ու գամ:
Ես ուզում եմ,— ասաց,—
Ազատ շրջել,
Օդանավի նման
Վերև թռչել,
Մի քիչ ազատ շնչել,
Քանի դեռ կամ:

Ասաց ու, այ քեզ բան՝
Թևեր առավ
Ու թափ տվեց իրեն
Ու վեր թռավ
Եվ օդի մեջ ճախրեց
Ծանր ու մեծ:
Ափսոս, միայն, ափսոս,
Որ կարճ տևեց...
Իր իսկ զնգզնգոցից
Նա սթափվեց,
Զգաց, որ թռել է
Երազի մեջ:

# ԵՐԵՎԱՆԻ ԿԵՆՏՐՈՆԻ Վ



Երևանի կենտրոնի շինարարությունը կարևոր խնդիր է մեր հանրապետության կյանքում և այն իրականացնելու համար արդեն մշակվել են բազմաթիվ ծրագրեր, ընդունվել են որոշումներ ու հաստատվել նախագծեր: Եվ որովհետև մեր շրջանը մասամբ գրավում է մայրաքաղաքի կենտրոնական տարածքը, տեղին ու հարմար կլինի նշել այն կարևոր, առաջնահերթ կառույցները, որոնք պատկերացում կտան մանկական օբյեկտների շինարարության մասին:

Ամենից առաջ նշենք, որ բոլոր կառույցները նոր, հատուկ մշակված նախագծեր ունեն՝ տեղանքին ու պահանջին համապատասխան, և ամենակարևորը՝ դրանք չեն կրկնում հին, արդեն հայտնի ձևերը: Դա մեր ճարտարապետներին ինքնուրույնություն դրսևորելու հիանալի հնարավորություն է տալիս, իսկ մենք՝ երևանցիներս, կունենանք միայն մեր քաղաքին հատուկ գեղեցիկ ու հարմար շենքեր:

Արդեն սկսվել է Երևան քաղաքի կենտրոնում գտնվող մի շարք մսուր մանկապարտեզների շինարարությունը: Քանի որ տարածքի սղության պատճառով շրջանի համարյա բոլոր մանկական հիմնարկները գտնվում են տարբեր շենքերի առաջին հարկերում, այժմ հնարավորություն է ընձեռվել հատուկ նախագծերով նոր կառուցումներ անել, որոնք, իհարկե, կունենան առաջին կարգի սպասարկում ու հարմարություններ: Մսուր-մանկապարտեզի շինարարություն է նախատեսվում Ալավերդյան և Կնունյանց փողոցների տարածքում, որը շահագործման կհանձնըվի այս տարվա վերջում: Արդեն կառուցվում է «Գարուն» արտադրական միավորման նոր մանկապարտեզը Բրյուսովի փողոցում՝ 280 երեխայի համար, Սպանդարյանի շրջանի պիոներպալատի շենքը՝ 500 երեխայի համար, որը փաստորեն քաղաքային պալատի ծանրաբեռնվածությունը կունենա: Նախագծված ու որոշված է վերակառուցել, ընդարձակել Թելմանի անվան դպրոցի հին շենքը: Կարևոր և առանձնահատուկ շինարարություն է նախատեսվում Ձորագյուղում: «Հաղթանակ» կամրջի մոտ, Հրազդանի ձախ ափին, կառուցվում են յուրօրինակ ճարտարապետական հատակագծման շինություններ: Դրանք «Ձորագյուղ» ազգագրական թաղամասի առաջին կառույցներն են, որոնց աշխատանքային նախագծերն իրականացնում են Երևանի ճարտարապետական հատակագծման գլխավոր վարչության հուշարձանների պահպանության և օգտագործման բաժնի աշխատակիցները:

19-րդ դարում այստեղ, Հրազդանի կիրճի այս գեղատեսիլ վայրում գոյություն է ունեցել մի փոքրիկ գյուղաքաղաք, որը ոչ միայն Հայաստանում, այլև նրա սահմաններից դուրս հայտնի է եղել իր արհեստագործությամբ, կաշեգործությամբ, տնայնագործությամբ, այգեգործությամբ և այլ զբաղմունքներով:

Այստեղ նախատեսվում էր 19-րդ դարի հայկական ճարտարապետության ոճով կառուցել մոտ 50 կառույց, որոնք կունենան ամենատարբեր նշանակություններ և կվերականգնեն «Ձորագյուղի» երբեմնի կոլորիտը:

Կառուցվելու է նկարիչների տան ցուցասրահ՝ «Մոսկվա» կինոթատրոնի և նկարիչների տան միջև, որը, հույս ու-





ներք, այս տարի հանձնել շահագործման: Այս տարի պիտի սկսվի ստորգետնյա անցումի շինարարությունը Օրջոնիկիձեի և Կարմիր Բանակի փողոցների խաչմերուկում, Պետական կրկեսի և Մամուլի տան միջև: Վերակառուցվում է Կիրովի անվան զբոսայգին նոր խաղահրապարակներով, բացօթյա էստրադայով և կարուսելներով: Հնարավորություն կա Մյասնիկյանի արձանի դիմացից մինչև գինու

# ԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

գործարան ընկած տարածքը ընդլայնել և ըստ որոշման կառուցել Գեղագիտության կենտրոնի նոր շենքը:

Զնայած այդ բոլոր կառուցումների հետևանքով «հին» քաղաքը ստիպված է զիջումների գնալ և կառուցումները պիտի տարվեն նրա հաշվին, այնուամենայնիվ, հոգ կտարվի նաև պատմաճարտարապետական հուշարձանների պահպանության մասին, այն շենքերի, որոնք դեռ բավականին ամուր են և կարող են «նոր» քաղաքի կողքին պահպանել նաև նախկին Երևանի մթնոլորտը: Ճարտարապետական առումով հին և նորի նման ներդաշնակությունը ուրույն, գեղեցիկ տեսք կտա մեր մայրաքաղաքին: Կստեղծվեն կանաչապատման նոր գոտիներ:

Քանի որ Սպանդարյանի շրջանը կառուցապատվող շրջան է, պետք է իր նոր կառույցներով համապատասխանի քաղաքի կենտրոնի ընդհանուր նախագծին: Այս հարցի մասին խոսելիս անպայման պետք է նկատի առնել քաղաքաշինության ժամանակակից պահանջների ու ազգային ճարտարապետության առնչության խնդիրը, որովհետև ինչքան էլ հետևենք քաղաքաշինության արդի նվաճումներին, այնուամենայնիվ, երբեք չըպետք է մոռանանք մեր ազգային դիմագիծն ու ավանդները:

Հուսանք, որ Երևան քաղաքի կառուցապատման գլխավոր հատակագիծը կըբավարարի քաղաքաշինության մեր ըմբռնումները՝ հատկապես ճարտարապետական նոր ոճերի և ազգայինի համադրման առումով, ինչպես նաև քաղաքի ընդհանուր տեսքի ներդաշնակության ու հեռանկարային կառույցների տեսակետով:

Լ. Խ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևանի Սպանդարյանի շրջգործկոմի նախագահ

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

# Տարսակոնցի Տարտարենը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մայրս ասում էր, թե մեզ օրոր ասելով է պառկեցրել, և շատ շուտ էլ քնել ենք: Իսկ երբ արդեն մեծացել էինք, շատ էինք սիրում պատմություններ լսել: Հատկապես ես, որ դեռ դպրոց չէի գնում կամ նոր էի սկսել գնալ: Հայրս պատմելու մեծ սեր ուներ: Երեկոները հավաքվում էին մեր տանտերը, տղաները, հարևանները, ու հայրս ձմեռվա երկար գիշերներին պատմում ու պատմում էր գաղթից, կոտորածից, մեծ մասամբ էլ՝ Ռոստովում ընթերցած գրքերից:

Շատ էի սիրում լսել երեք հրացանակիրների մասին ու մինչև վերջ էլ չէի հասկանում, թե պատմելու ընթացքում ինչպես են չորս դառնում: Նրանք, իհարկե, ինձ համար իրական մարդիկ էին, և չէի կասկածում՝ հայեր: Չէ՞ որ մեկին կոչում էին Դ'Արտանյան, մյուսին՝ Արամիս: Դ'Արտանյանը պարզ էր, իսկ մի՞թե մեր փողոցում Արամայիս անունով հարևան չունեինք: Մնում էին Աթոսն ու Պորթոսը: Աթոս չէի լսել, բայց Մաթոս կար: Չկար միայն Պորթոսը: Բայց դրա փոխարեն Պարթևն ու Պարգևը կային: Չէ, որ նրանք հայեր էին, կասկած չունեի: Բայց որտե՞ղ էին ապրում: Որ ապրում էին՝ ավելի համոզվեցի, երբ հայրս պատմեց մի ուրիշ պատմություն, այս անգամ՝ Տարասկոնցի Տարտարենի մասին:

Պատմում էր, թե ինչպես է նա անապատում կռվի բռնվել առյուծի հետ, իսկ սա էլ թաթով խփել է նրա գլխին ու ծամը վիրավորել: Եվ էլի շատ բաներ էր պատմում այդ Տարտարենի մասին: Նման անուն չէի լսել և ցանկանում էի իմանալ, եղե՞լ է այդպիսի մարդ, թե ոչ: Առյուծի նկար տեսել էի գրքերում, և Արամ եղբայրս էլ բացատրում էր, թե գազանների թագավորն է: Իմ իմացած գազանները գայլն ու բորենին էին, որ կային մեր Զանգվի ձորում, և դրանով էին մեզ հիմնականում վախեցնում: Անապատն էլ, եղբորս ասելով, շատ մեծ տեղ էր, որ հողի փոխարեն ավազ էր, մարդիկ չէին ապրում, և շատ առյուծներ կային: Եվ ասում էր, թե գայլերն էլ են սարսափում առյուծից:

Ահա այսպիսի գազանի հետ էր կռվել Տարտարենը, ու երբ նրա հարվածից հետո գլխից ծամը վիրավորվել էր, ուշագնաց ընկել, առյուծը մեծահոգաբար չէր հեռացել:

Հայրս պնդում էր, որ այդպես է, առյուծը գիտե խղճալ իր զոհին, և կարծում էր, թե նույնիսկ նստել է Տարտարենի մոտ ու սպասել, մինչև նա ուշքի կգար: Ու նոր էր միայն թողել-գնացել: Իսկ ես ավելի ու ավելի էի սիրում այդ Տարտարենին, որը չէր վախեցել ու կռվի էր բռնվել առյուծի հետ: Ու մի օր էլ, երբ ես եղբորս շատ էի հարցուփորձել, թե այժմ էլ ապրո՞ւմ է այդ մարդը, նա խորամանկ ժպտաց ու ասաց.

— Դու նրան տեսել ես:

— Ե՞ս,— անակնկալ ուրախությունից վեր թռա,— որտե՞ղ:

— Խելոք մնա՝ կասեմ:

Ես խոստացա խելոք մնալ և խաղալու համար մեր փողոցից շատ չհեռանալ: Բայց նա դեռ չէր բացում գաղտնիքը: Ու մի օր, երբ նրա կարծիքով արդեն խելոքացել էի և ինձ էլ ոչ մի կերպ չէր հաջողվել իմանալ Տարտարենի ով լինելը, թեև շատ էի փորձել նրանից գաղտնի հարցնել թե՛ հորս, թե՛ մորս և թե՛ Զարուհի տատիս, Արամ եղբայրս մեծահոգաբար հայտնեց գաղտնիքը՝ ոչ մեկին չասելու պայմանով:

Իսկ ես տղամարդավարի երդվեցի՝ իմ արև:

— Տիկին Նվարդի ամուսինն է,—վերջապես շշնջաց նա:

Ու թեև առաջին պահին կարկամեցի, սակայն հետո կասկածեցի: Այդ զգալով, նա մատը տարավ ճակատիս՝ հոնքից վերև:

— Կարծեմ լավ ես հիշում նրա ճակատի փոսը:

Իրոք, նրա հոնքից վերև (չեմ հիշում՝ ձախ, թե՞ աջ) մի մեծ փոս կար:

—Առյուծի թաթի տեղն է,— ասաց նա անառարկելի ձայնով:

Իհարկե՛, ինչպե՞ս մինչ այդ գլխի չէի ընկել:



— Բայց կարծեմ նրա անունը Տարտարեն չի,— ասացի ես, թեև անունը ես էլ չգիտեի, գիտեի միայն, որ տիկին Նըվարդի ամուսինն է:

— Թաքցնում է,— գիտակ տոնով ասաց եղբայրս: Իսկ թե ինչու էր թաքցընում՝ չբացատրեց: Ասենք, մենք այն ժամանակ մեծերի խոսքը կասկածի տակ չէինք առնում, և մեր տանն էլ մեծերի ասածին կասկածելն ընդունված չէր:

Ու ես այժմ առիթ էի որոնում, որ գնայինք տիկին Նվարդենց տուն: Իսկ մերոնք զբաղված էին և հազվադեպ էին գնում: Չէ՞ որ տիկին Նվարդենք ապրում էին Վերին և Ներքին Արաբկիրների ինչ-որ սահմանագծում, և տունն այնքան էլ մոտ չէր: Վերջապես մի օր մայրս գործով այնտեղ էր գնում ու ինձ էլ հետը տարավ:

Տիկին Նվարդը մեզ ընդունեց ուրախությամբ: Ամուսինը նստած էր իր մըշտական տեղում՝ թախտի վրա: Մերոնց առողջության մասին հետաքրքրվելուց հետո շուտով լռեց, և խոսում էր միայն տիկին Նվարդը:

Իսկ նա խոսում ու խոսում էր, հարցուփորձում, ինչ-որ մեկի հետ հեռակա վիճում, իր ասածը հաստատում:

Երբ տուն եկանք, ես եղբորս կասկած հայտնեցի. դժվար թե տիկին Նվարդի ամուսինը լինի տարասկոնցի Տարտարենը:

— Ինչպե՜ս,— զարմացավ եղբայրս,— մի՞թե ճակատի նշանին նորից չնայեցիր:

— Նայեցի,— նահանջեցի ես։— Բայց ինչո՞ւ կարգին չի ասում-խոսում, միշտ նստած է թախտին։ Ինչպե՞ս է կռվել առյուծների հետ։

— Է՜,— ժպտաց եղբայրս միամտությանս վրա,— հիմա շատ է ծերացել ու շատ է տխրում, որ էլ չի կարող առյուծների հետ կռվել։

— Գոնե խոսի,— մի վերջին թույլ փորձն արեցի ես։

— Ուրեմն առյուծների հետ կռված մարդը հիմա նստի ու քեզ հետ երկարբարակ խոսի՞, քո խաղընկե՞րն է,— զարմացավ նա։

Ես լիովին զինաթափվեցի, եղբայրս ճիշտ էր ասում։

Իսկ տիկին Նվարդը հաճախ էր մեր տուն գնում-գալիս։ Քաղաքից վերադառնալիս (ինչպես անվանում էինք Արաբկիրը) այցելում էր մեզ։ Ու թեև միշտ էլ ցանկանում էի հարցնել ամուսնու մասին, սակայն ինձ ետ էր պահում եղբորս սաստող հայացքը։ Անենք, հարցնելու հնար էլ չէր լինի։ Չէ՞ որ տիկին Նվարդը շատ էր սիրում խոսել,զրուցել, վիճել, պատմել և դիմացինին ժամանակ չէր տալիս։ Սիրում էր ամեն ինչի մասին իր կարծիքն ասել և դրանից երբեք չէր հրաժարվում։ Մենք դրանում ավելի համոզվեցինք ահա թե ինչ առիթով։ Թեև պատերազմն արդեն ավարտվել էր, սակայն կրտսեր քեռիս դեռ չէր վերադարձել, և տատս անհամբեր սպասում էր։ Նա նամակներից մեկում հայտնում էր, թե ամուսնանալու է և շուտով կնոջ հետ կգան։ Հաջորդ նամակում էլ հարսնացուի լուսանկարն ուղարկեց։ Ու քանի որ նամակում միայն նրա անունն էր գրել, ուստի՝ մորս ու տատիս հետաքրքրությունը գնալով մեծանում էր. որտեղացի՞ կլինի, ինչպե՞ս են ծանոթացել, ովքե՞ր են ծնողները։

Այդ օրը եկավ տիկին Նվարդը։ Լուսանկարը ցույց տվեցին։ Նա նայեց ու համոզված ասաց.

— Ախալցխացի է, դեմքից պարզ երևում է։

Մերոնք հավատացին. չէ՞ որ ասողը տիկին Նվարդն էր։ Հաջորդ նամակում քեռիս, ի պատասխան տատիս նամակի, գրում էր, թե հարսնացուի ծնողները Արմավիր քաղաքից են ու ինքն էլ է ծնվելմեծացել այնտեղ։ Երբ այս մասին իմացավ տիկին Նվարդը, առարկություն չընդունող ձայնով ասաց.

— Չի կարող պատահել, ախալցխացի է։

Ահա այդպիսին էր տիկին Նվարդը, ու ես ինչպե՞ս համարձակվեի նրան հարցնել ամուսնու մասին, բացել խնամքով թաքցրած նրանց գաղտնիքը։

Հետո նրանք Արաբկիրից քաղաք փոխադրվեցին, և ես արդեն համարյա չէի տեսնում տիկին Նվարդին։ Մի օր էլ իմացանք, թե ամուսինը վախճանվել է։ Չէ՞ որ արդեն շատ էր հիվանդ ու ծեր։ Մերոնք գնացին թաղմանը, անկեղծորեն վշտացան ու տխրեցին. քանի՜ տարվա ծանոթներ էին։ Ես էլ շատ էի վշտացած, որ չկարողացա հենց իրենից՝ Տարասկոնցի Տարտարենից իմանալ առյուծների հետ նրա կռիվների մասին և գոնե հեռվից տեսնել այն հրացանը, որով կռվել էր ու ճակատին վերք ստացել։ Մեծ էր ափսոսանքս նաև այն պատճառով, որ մեռել էր հորս պատմությունների միակ ճանաչածս հերոսը։

Հետո իմացանք, որ տիկին Նվարդը փոխադրվել է որդու մոտ, ինչ-որ քաղաք, և այլևս նրան երբեք չտեսանք։

Սակայն հաճախ էինք հիշում նրա վերջնական վճիռներն ու սրամիտ խոսքերը։ Հիշում էինք քեռուս կնոջ լուսանկարի հետ կապված ուրախ պատմությունը։

Իսկ իմ ափսոսանքի զգացումը դեռ չէր անցնում։ Եվ չանցավ նույնիսկ այն ժամանակ, երբ հորս գրքերի մեջ, չգիտեմ՝ երրորդ, թե չորրորդ դասարանում, գտա մեկը, որի վրա գրված էր՝ Ալֆոնս Դոդե «Տարասկոնցի Տարտարենը»։ Ու իբր բանից անտեղյակ՝ շատ միամիտ հարցրի եղբորս.

— Ալֆոնս Դոդեն հա՞յ է։

— Չէ,— ասաց,— ֆրանսիացի գրող է, ինչի՞դ է պետք։

Հետո ամեն ինչ հասկանալով, մի կուշտ ծիծաղեց։ Ծիծաղում էի նաև ես։ Մերոնք էլ շատ ծիծաղեցին ու միշտ հիշում էին այդ պատմությունը։

Ու մինչև այժմ էլ չեմ կարողանում առանց ժպիտի մտաբերել Դոդեի հերոսին։ Ու երբ խոսք է լինում Տարասկոնցի Տարտարենի մասին, ես անմիջապես մտաբերում եմ տիկին Նվարդին ու նրա ամուսնուն, որի անունն այնպես էլ չիմացա։ Չէ՞ որ հավատացած էի, թե հենց ինքն է Տարասկոնցի Տարտարենը։ Մինչ այժմ էլ Տարտարենին նրա դիմագծերով եմ պատկերացնում։

# Հովհաննես Թումանյան
1869—1923



## Լուսավորչի կանթեղը

Կես գիշերին կանթեղը վառ
Կախ է ընկած երկնքից,
Լուսավորչի կանթեղն անմար
Հայոց մըթնած երկընքից։

Կախ է ընկած առանց պարան
Արագածի կատարին,
Ու սեղանից հըրկայական
Լույս է տալիս աշխարհին։

Լույս է տալիս երկա՜ր դարեր,
Ու վառվում են միշտ անշեջ՝
Սուրբի մաքուր արցունքները
Յուղի տեղակ նըրա մեջ։

Ոչ մարդկային ձեռ կըհասնի
Էն ահավոր բարձունքին
Եվ ոչ քամին կըհանգցընի՝
Վիշապ-քամին ահագին։

Երբ պատում է մութ խավարը
Չընաշխարհիկ մեր երկրին,
Երբ տիրում է ահն ու վախը
Թույլ, կասկածոտ սըրտերին,

Ով անմեղ է, լիքը՝ սիրով
Ու հավատով անսասան,
Ով նայում է վառ հույսերով
Դեպի Հայոց ապագան,—

Նա կըտեսնի էն մըշտավառ
Ջահը կախված երկընքից,
Ասես՝ աստծո աչքը պայծառ
Հըսկում է ցած երկընքից։



# Ռաֆայել Քոթանջյան

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Դուք նկատե՞լ եք, որ դերասանները կյանքում իրենց շատ պարզ ու անբռնազբոս են պահում: Երբ փոքր էի, կարծում էի, թե նրանք կյանքում էլ այնպիսին են, ինչպիսին տեսնում էի ներկայացումների մեջ: Իրականում բոլորովին էլ այդպես չէ, որովհետև մի ներկայացման մեջ նա չար մարդ է, մեկ ուրիշում՝ բարի, իսկ մյուսում՝ ծիծաղելի ու զավեշտական:

Հիշում եմ, տարիներ առաջ ընտանիքով հավաքվել էինք հեռուստացույցի առջև և դիտում էինք «Սատանայի ջրաղացը» ներկայացումը:

Ողջ ներկայացման ընթացքում զարմացած մտածում էինք. «Այ թե ինչպիսին է լինում սատանան»: Ես ու քույրս նույնիսկ վախեցած էինք, սակայն հակառակ դրան՝ մինչև ուշ գիշեր հրճվալից տրամադրությամբ չէինք դադարում կրկնել այդ սև սատանայի ուրախ երգը.

Անտառի միջին՝ փոքրիկ պարտեզ,
Պարտեզի միջին՝ մի արահետ,
Մի քիչ էլ գնաս՝ թփերի տակին
Տունը կգտնես սուրբ ճգնավորի...

Իմ մտքով այն ժամանակ երբեք չէր

անցնի, որ կհանդիպեմ ու մոտիկից կծանոթանամ Ռաֆայել Քոթանջյանի հետ, թեև մտածում էի, որ եթե մի օր դա տեղի ունենա, կմոտենամ ու կասեմ՝ «Բարև ձեզ, սիրելի Սատանա»:

Հանրապետության վաստակավոր արտիստ, Երևանի դրամատիկական թատրոնի դերասան, Ռաֆայել Քոթանջյանի հետ անձամբ ծանոթանալու մանուկ օրերից փայփայած երազանքս իրականացավ տարիներ հետո:

Ծանոթացա. որքան ծիծաղելի, անկիրթ ու անմիտ են նրա հերոսները, այնքան նա բարեկիրթ ու նրբանկատ է իրականում: Նա մտածում և խոսում է արագ (ինչպես փորձված սատանաները), և որքան ճղճղան են սատանաները, այնքան գեղեցիկ ու բարեհունչ է նրա խոսքը: Ռ. Քոթանջյանը նաև հրաշալի հիշողություն ունի: Դյուրությամբ մտապահում է ոչ միայն իր դերի խոսքերը, այլև մյուս սատանաների, ահ, ներեցեք՝ գործող անձանց:

Ռ. Քոթանջյանը արտաքուստ լռակյաց և մտախոհ մարդու տպավորություն է թողնում, բայց իրականում կենսուրախ ու կատակասեր է: Սիրում է ծիծաղել, իսկ ավելի շատ՝ ծիծաղեցնել: Դե այդ մասին մենք բոլորս էլ գիտենք:

Երբ ստեղծվեց Երևանի դրամատիկական թատրոնը, Ռ. Քոթանջյանը նորաստեղծ թատրոնի դերասանական կոլեկտիվի առաջին անդամներից էր: Թեև ռեժիսորական ֆակուլտետն էր ավարտել (հետագայում՝ նաև դերասանական), բայց այդ տարիներին օրեցօր համոզվում էր, որ միայն դերասան դառնալով բեմում կարող է բացահայտել իր տաղանդը: Եվ պրպտող ու որոնող դերասանը շուտով մեկը մյուսի ետևից կարողացավ կերտել ցայտուն ու տպավորիչ կերպարներ: Նրա շատ դերակատարումներ, իրոք, սիրվեցին հանդիսատեսի կողմից, իսկ մի շարք կերպարներ դարձան երեխաների սիրած հերոսները: Անվանի դերասանը սիրով է խաղում մանկական պիեսներում՝ ստեղծելով կենսուրախ, զվարթ ու զարմանալի հերոսներ:

Չնայած ծայրահեղ զբաղվածությանը (թատրոն, հեռուստատեսություն, ռադիո), անվանի դերասանը ժամանակ է գտնում հանդիպելու պիոներ-դպրոցականների հետ: Սիրով պատասխանում է նրանց հետաքրքրող հարցերին, պատմում հետաքրքիր դեպքեր: Իսկ շատերն հարցնում են նրան, թե ինչո՞ւ է շատ հազվադեպ նկարահանվում ֆիլմերում:

«Տարիներ առաջ,—պատմում է դերասանը,— Օդեսայում նկարահանվում էր «Մաքսանենգություն» կինոնկարը: Բեմադրիչը Սլավա Գովորուխինն էր, հետագայում հայտնի «Հանդիպման վայրը փոխել չի կարելի» ֆիլմի բեմադրիչը: Նրա շնորհիվ էլ ինձ բախտ վիճակվեց ծանոթանալ Վլադիմիր Վիսոցկու հետ: Ես հրավեր ստացա Սլավա Գովորուխինից՝ խաղալու այդ ֆիլմում մի մաքսանենգի դեր: Կարդացի տեքստը և կես ժամ չանցած, ասացի, որ պատրաստ եմ: Նա, իհարկե, զարմացավ, բայց իմ հաստատակամությանը զիջելով, թույլ տվեց նկարահանել այդ դրվագը: Նկարահանումն ավարտվեց: Ծափեր: Շնորհավորանքներ: Սլավա Գովորուխինը գոհ էր. ամեն ինչ փայլուն էր ստացվել: Ավաղ, մի քանի ամիս անց հեռագիր ստացա, որ ժապավենը փչացել է: Այդ դրվագը, իհարկե, նորից նկարահանվեց, բայց այլևս այն չէր...»:

Այսպես էլ է լինում, բայց հույսով ենք, որ նա շուտով հանդես կգա նաև կինոնկարներում, և դա մեզ շատ կուրախացնի:

Ռ. Քոթանջյանը մի առանձնակի լրջությամբ է խոսում երեխաների համար իր ստեղծած կերպարների մասին: Պատմում է ջերմ ու սրտահույզ, սիրով ու ոգևորությամբ: Ի դեպ, երեխաներին նա համարում է իր ամենահավատարիմ հանդիսատեսը:

Մանկական թեմաներով գրված հեքիաթ-պիեսներում նա աշխատում է դերը զերծ պահել անիրական շղարշից. կերպարը դարձնել առավել համոզիչ ու բնական:

Մեր ընթերցողները անշուշտ հիշում են Ռ. Քոթանջյանի անձնավորած Քաղաքապետին՝ «Վիշապը» հեռուստատեսային ներկայացման մեջ: Շատերն են ծիծաղել ու հրճվել, տեսնելով նրան վհուկ տիկին Կազիմուրայի դերում՝ «Խղճուկ թագավորության խղճուկ ժամանակները» ներկայացման մեջ:

Իսկ «Ստվերը» հեքիաթ-ներկայացումը դիտելիս խոր ատելությամբ ենք լցվել նրա հերոսի հանդեպ, արհամարհանքով տրամադրվել ֆինբաժնի Պետրոսի նկատմամբ («Քո վերջին հանգրվանը»), և, իհարկե, անհունորեն տխրել ենք՝ տեսնելով ու զգալով Լուիջիի անլուր տառա-

պանքը «Լուիջիի սիրտը» ներկայացման ժամանակ:

Հարկ է նշել, որ դերակատարման հաջողությունը շատ դեպքերում կախված է դերասանի ստեղծագործական խառնըվածքից, բեմական իրավիճակները ընըբռնելու, խաղի ժամանակ ակընթարթորեն կողմնորոշվելու, դերին բնորոշ շարժուձև, դիմախաղ ու ձայնային հնչերանգ ընտրելու շնորհքից: Քոթանջյանի արտահայտիչ դիմախաղը, ձայնի յուրօրինակ հնչողությունն ու բարձր տեխնիկան նրա դերակատարումները դարձնում են էլ ավելի գունեղ ու կենդանի: Այս իմաստով նրա շատ անձնավորումներ երկար են մնում հանդիսատեսի հիշողության մեջ: Լինելով դիտողունակ, նախապես հստակորեն տեսնելով յուրաքանչյուր դերի բեմական հնարավորությունները, նա ազատորեն հետևում է իր ստեղծագործական ներշնչանքին և իր խաղով բազմաթիվ ինքնամոռաց պահեր պարգևում հանդիսատեսին:

Մի անգամ «Սեր և ծիծաղ» ներկայացման ժամանակ հանդիսասրահում նստած՝ ես լսեցի, թե ինչպես մի կին մի քանի անգամ փորձեց նկատողություն անել միջահասակ մի տղամարդու, որը Ռ. Քոթանջյանի ողջ խաղի ընթացքում զըրընգուն ու բարձրաձայն ծիծաղում էր՝ ձեռքի ափով անընդհատ սրբելով արցունքոտվող աչքերը: Նկատողությունն անտեղի էր, որովհետև տղամարդը չէր լսում կնոջը և ինքնամոռաց կերպով հետևում էր դերասանի խաղին: Դուք հավանաբար հիշում եք Սերվանտեսի «Դոն Կիխոտ» վեպի այն հատվածը, որտեղ տիկնիկային թատրոնի ներկայացման ժամանակ Դոն Կիխոտը, հավատալով բեմում կատարվող դեպքերի իրողությանը, սուրը ձեռքին շտապում է բեմ՝ բարի արքայազնին չարագործներից փրկելու: Ազնիվ ասպետը սթափվում է միայն այն ժամանակ, երբ արդեն ջարդուփշուր էր արել ողջ բեմն ու դուրս վըռնդել թատրոնի տնօրենին: Սա հնարովի պատմություն է, բայց իր մեջ խոր իմաստ է կրում: «Դերասանի մեծագույն արվեստը,— ինչպես ասում է Ռ. Քոթանջյանը,— հանդիսատեսին «գերելն ու իր ետևից տանելն է»: Սա է թատրոնի կախարդական ուժը: Իսկ երբ դերասանը կարողանում է «կախարդել» հանդիսատեսին, ապա նա իսկական դերասան է:



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# Ռուբոն

Նկարը՝ ԿԱՅԾԱԿ ՎԱՆԻԿՅԱՆԻ

**Յոթերորդ դասարանն ուրիշ է: Յոթերորդ դասարանում պարսատիկով պատուհաններ ջարդել չի կարելի: Ասենք չես էլ ուզում, քանի որ, ինչպես պապդ է ասում՝ «եքա մարդ ես», և ինքը քո տարիքում գութանի հորիկ է քշել: Դու իսկի չես էլ հասկանում, թե դա ինչ է նշանակում, քանի որ պապդ այդ «հորիկ» կոչվածը քշել է, է՜, համարյա հարյուր տարի առաջ: Հիմա ի՞նչ գութան, ի՞նչ հորիկ: Հիմա դաշտը տրակտորներով են հերկում, ու դու էլ որոշել ես հենց մեքենատրակտորային կայանին կից տրակտորիստների կուրսեր ընդունվել: Ճիշտ է, մի քանի ամիս առաջ դիմեցիր, չընդունեցին, ասացին փոքր ես: Բայց դու տրակտորն այնքան լավ ես ուսումնասիրել, որ տրակտորիստ եղբայրդ՝ Հակոբը, զարմացած էր մնացել: Դեռ նա չգիտեր էլ, որ դու երկու անգամ իրենից թաքուն դաշտում տրակտոր ես քշել, ճիշտ է, կարճ տարածություն...**

**Մի խոսքով՝ յոթերորդ դասարանում արդեն «եքա մարդ ես» և ուրեմն պայուսակիցդ հանիր ու դեն գցիր պարսատիկըդ:**

**Այսպիսի մտքեր էին պաշարել Ռուբենին, որին, իհարկե, ոչ տանը, ոչ էլ դըպրոցում ոչ ոք, բացի հայոց լեզվի ու գրականության ուսուցչուհի ընկեր Մանասյանից, Ռուբեն չէր ասում, բոլորն ասում էին՝ Ռուբո:**

**Մաթեմատիկայից «լավ» ու «գերազանց» գնահատականներ էր ստանում, ֆիզիկայից ու «հայոցից»՝ նույնպես, պատմությունից ու «աշխարհից» տատանվում էր «միջակի» ու «լավի» արանքում: Նայած թե նախորդ օրն ինչքան էր ֆուտբոլ խաղացել... Այսինքն՝ Ռուբոն ոչ գերազանցիկ էր և ոչ էլ «անպետքի մեկը», ինչպես ծույլերին ու թույլերին կոչում էր ընկեր Մանասյանը:**



Սիրում էր դասամիջոցներին ընկերների հետ կոխ բռնել: Երկուսին հաղթում էր, երեքից հաղթվում: Դրա համար էլ քիթն ու ծնկներն անընդհատ քերծված էին լինում: Սիրում էր իրենց դասարանի Նազիկի երկար հյուսքերից «կախվել»: Նազիկն, իհարկե, ցավից աղաղակում էր կամ մի քիչ էլ այնպես էր ցույց տալիս, թե ցավից է աղաղակում, և դաստեկ ընկեր Նոյեմը Ռուբոյի ծնողներին, այսինքն, ավելի ճիշտ, ավագ եղբորը՝ տրակտորիստ Հակոբին, դպրոց էր կանչում: Իսկ նա բարեխղճորեն ներկայանում էր և ամեն անգամ խոստանում, որ Ռուբոյի «ականջները պոկելու է», սակայն այդպես էլ ոչ մի անգամ նրա ականջներին ձեռք չտվեց:

Այդպիսին էր Ռուբոն, իմ կրտսեր եղբայրը, քանի որ տրակտորիստ Հակոբը հենց ես եմ, որ կամ:

Այդպիսին էր, մինչև որ մեր գյուղում տեղի ունեցավ մի դեպք, որի մասին գրեց շրջանային թերթը, ու լուրը կենտրոնական թերթերին էլ հասավ:

Ամեն տեղ էլ անփույթ ու թափթփված մարդիկ կան: Բարկացած ժամանակ մեր կոլտնտեսության նախագահ Բաբայանն ում ասես որ անփույթ ու թափթփված չէր ասում: Նա նույնիսկ մեր անվանի մեխանիզատոր Երանոս քեռուն էլ չէր խնայում: Այն Երանոս քեռուն, որի վերանորոգած ավտոմեքենան հարյուր հազար կիլոմետր ճամփա էր կտրում առանց փուշտալու և որի մասին հենց նույն Բաբայանը, երբ տրամադրությունը բարձր էր լինում, ասում էր.

— Մեր Երանոս քեռուն մի կտոր երկաթ տուր, շոգեքարշ կսարքի:

Ամեն տեղ էլ անփույթ ու թափթփված մարդիկ կան: Մեր գյուղում էլ կան, թեև ոչ մեկը չի խոստովանում, թե ինքն անփույթ է կամ թափթփված: Մեր տատը, որ մեր հաշվումներով նույնպես հարյուր տարին վաղուց էր ետևը թողել, Ռուբոյին համարում էր ոչ միայն անփույթ ու թափթփված, այլև «կապը կտրած», թեև ամենից շատ նրան էր սիրում և կովը կթելուց հետո դույլից թարմ կաթ խմելու իրավունքը միայն նրան էր տալիս: Տատի կարծիքով Ռուբոն «կապը կտրած» էր հենց թեկուզ այն պատճառով, որ դեռ լրիվ տասներեք տարեկան էլ չկար, բայց արդեն երեկոները ժամը տասից շուտ տուն չէր գալիս: Տատը միշտ մոռանում էր, որ Ռուբոն, այնուամենայնիվ, տրակ-

տորիստների կուրսերին էր մասնակցում և երեկոներն զբաղված էր իր սիրած գործով:

Եթե ձմեռ է և տներում վառարաններ են վառվում, ապա ճիշտն այն է, որ ծուխը քուլա-քուլա դուրս գա ծխնելույզներից:

Ծուխը ոչ միայն ծխնելույզից էր դուրս գալիս, այլև գյուղի ծայրին միայնակ կանգնած միհարկանի տան պատուհանների ու դռան ճեղքերից:

Դուռը փակ էր: Առանց ժամանակ կորցնելու, Ռուբոն քարով կոտրեց պատուհաններից մեկի ապակին ու թանձր ծխից խեղդվելով, մահճակալի տակից դուրս քաշեց երեխաներին. մեկին շալակն առավ, մեկին գրկեց, արագ մտավ առաջին սենյակը, այնտեղից՝ միջանցք: Միջանցքում թեժ վառվող վառարանի ձայն էր գալիս, առաստաղը, պատին հենված հագուստեղենի պահարանն ու դռան շրջանակն արդեն վառվում էին: Բոցը Ռուբոյի շալվարին հասավ: Նա ցավից աղաղակելով վազեց դեպի այրվող դուռը, ինքն էլ չհասկացավ, թե ինչպես բացեց և իրեն դուրս նետեց տնից: Երեխաներին դրեց ցանկապատի տակ ու սկսեց թավալվել ձյուների մեջ: Ցավից չէր կարողանում արցունքները զսպել... Բայց մարդիկ արդեն հավաքվել էին:

Առաջին անգամ էր, որ եղբայրս պատուհանի ապակի ջարդեց, ու ինձ ոչ միայն դպրոց չկանչեցին, այլև գյուղի բոլոր պառավները օրհնեցին նրան, իսկ նրանցից ամենածերը գորովանքով ասաց.

— Ռուբոյի ջանին մեռնեմ, իսկական տղամարդ է:

Առաջին անգամ ոչ ոք Ռուբոյին չկշտամբեց ո՛չ քերծված քթի, ո՛չ էլ ծընկների համար: Ասենք, դրանք ոչ թե քերծված էին, այլ այրված, այնքան այրված, որ մինչև գարնանային արձակուրդները նա դպրոց չհաճախեց՝ իր բաժին «լավերը», «գերազանցներն» ու «միջակներն» ստանալու:

Այն, ինչ պատմեցի, եղել է տարիներ առաջ: Հիմա մեր գյուղում Ռուբո չկա, կա Ռուբեն Մեսրոպի Թադևոսյան՝ շրջանի ամենալավ մեխանիզատորը, որին տասը օր առաջ մեր գյուղացիները կոլտնտեսության նախագահ ընտրեցին:




Լինում են պատահականություններ, որոնք վճռորոշ են դառնում կյանքում: Թե ինչպես կդասավորվի պատանիների Սովետական Միության չեմպիոն, սպորտի վարպետ Հարություն Բարսեղյանի ապագան, առայժմ դժվար է ասել, բայց որ հանրապետության լուսավորության մինիստրության «Օլիմպիական ռեզերվի» պատանի ըմբիշների մասնագիտացված մարզադպրոցի սանը պատահականորեն հայտնվեց դահլիճում, փաստ է:

— Դա տեղի ունեցավ 1980 թվականին: Խմբի երեխաները ինձ ներկայացրեցին վախվորած ու վտիտ, սակայն շարժուն մի պատանու, որը առաջին հայացքից ոչնչով չէր առանձնանում: Հարությունը անսահմանորեն նվիրված է ըմբշամարտին: Անցած յոթ տարում չեմ հիշում մի օր, որ նա մարզումներից բացակայած լինի: Չափից ավելի աշխատասեր է, համառ, սիրում է, եթե կարելի է ասել, ստեղծագործել գորգի վրա և պայքարում է մինչև հանդիպման վերջին պահը,— պատմում էր մարզիչը՝ Լևոն Վարդանյանը, իսկ ես թերթում էի սանի մարզական տարեգրությունը:

1982 թվականին Հարությունը նվաճում է կրտսեր տարիքի պատանիների մայրաքաղաքի չեմպիոնի կոչումը, սակայն մարզիչը չի շտապում նրան դուրս բերել հանրապետական գորգ: Չնայած հաղթանակին, առաջին մրցաշարը երիտասարդ մարզիչին հուշում է, թե հատկապես ինչի վրա պետք է աշխատի սանը: Եվ մի ամբողջ տարի հղկում են մինչ այդ ձեռք բերածը, մարզական զինանոցը հարստացնում նոր հնարքներով:

Հարություն Բարսեղյանի համար մարզական բարձունքներ տանող ճանապար-



հը սկսվում է 1984 թվականից: 14-ամյա ազատ ոճի ըմբիշի նորամուտը հանրապետական գորգ պսակվեց հաղթանակով: Հարությունը իր բարձր կոչումը պահպանեց նաև 1985 թվականին և ապա առաջին անգամ մասնակցելով «Սպարտակ» կամավոր մարզական ընկերության համամիութենական խորհրդի առաջնությանը, տուն վերադարձավ չեմպիոնի ոսկե պարգևով:

1986 թվական: Հարությունը երրորդ անգամ լավագույնն է ճանաչվում հանրապետությունում, նվաճում դպրոցականների հանրապետական սպարտակիադայի, «Օլիմպիական բողբոջներ» համամիութենական մրցաշարի հաղթողի կոչումները և ապա բացահայտ առավելությամբ նվաճում Դաղստանի Ինքնավար Հանրապետությունում անցկացված «Բարեկամություն» համամիութենական խոշոր մրցաշարի հաղթողի կոչումը: Հարությունի համար հաղթական ավարտ է ունենում նաև Դնեպրոպետրովսկում անցկացված համամիութենական ընտրական մրցաշարը, որտեղ հանդես էին գալիս երկրի բոլոր թեթևքաշային ուժեղագույն պատանի ըմբիշները: Եվ միայն մեկ անգամ, դեկտեմբերի վերջերին, Ստավրոպոլի երկրամասի Չերկասկ քաղաքում անցկացված համամիութենական արհեստակցական ընկերությունների կենտրոնական խորհրդի առաջնությունում նրան չհաջողվեց լինել առաջինը: Կրելով միայն մեկ պարտություն, մարզական թեքումով № 10 գիշերօթիկ դպրոցի 10-րդ դասարանի աշակերտը արժանացավ բրոնզե պարգևի...

— Ճիշտն ասած, այդ պարտությունը ինձ ավելի շատ ուրախացրեց, քան նախորդ հինգ մրցաշարերում տարած անընդմեջ հաղթանակները,— զրույցի ժամանակ ասաց մարզիչը:— Մեծ սպորտը չի սիրում նման գլխապտույտ հաջողություններ: Ինքդ քեզ ավելի լավ ճանաչելու համար անհրաժեշտ են նաև պարտություններ, որպեսզի մարզիկը ավելի ճիշտ գնահատի իր հնարավորությունները: Իսկ որ դա այդպես է, պարզ դարձավ այս մրցաշրջանի առաջին հատվածում, երբ Հարությունը դպրոցականների ձմեռային արձակուրդների օրերին մասնակցեց Կալինինգրադում անցկացված պատանիների Սովետական Միության առաջնությանը: Պատանեկան սպորտի այդ խոշոր ստուգատեսում 17-ամյա ըմբիշը յոթ հանդիպում անցկացրեց և բացահայտ առավելությամբ պարտության մատնելով թեթևագույն քաշային կարգի երկրի բոլոր ուժեղագույն ազատ ոճայինների, նվաճեց Սովետական Միության չեմպիոնի տիտղոսը:

Մեզ համար բացառիկ լարված կլինի հատկապես այս մրցաշրջանը: Չէ՞ որ յուրաքանչյուր տարած հաղթանակ նրան է՛լ ավելի կամրապնդի երկրի պատանեկան հավաքականում, իսկ վրիպումները կարող են և ճակատագրական լինել:

Սակայն համոզված ենք, որ նա կշարունակի իր հաղթարշավը: Չէ՞ որ նշանավոր ըմբիշ, աշխարհի գավաթակիր, սպորտի վաստակավոր վարպետ Նորայր Մուսեղյանի ղեկավարած մարզադպրոցում բարձր կարգի ըմբիշներ քիչ չեն պատրաստվել, իսկ նրանց շարքում կան նաև աշխարհի ու Եվրոպայի չեմպիոններ, որոնցից էլ օրինակ է վերցնում 1987 թվականի մեր հանրապետության առաջին չեմպիոնը...

ՀՈՎՀ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

## Երկու ձնծաղիկ

Անցան ցուրտն ու հողմը պաղ
Սարով անառիկ,
Իրար նայում են ուրախ
Երկու ձնծաղիկ:
Նրանք ծնվել են տաքուկ
Թուրվանդի ձորում
Եվ չեն տեսել հողմ ու բուք,
Քարափի տակ՝ ձյուն:
Սփսփում են մեղվաբույր
Կածանի վրա,
Կարծես լինեն նրանք լուռ
Երկու երեխա:
Բույր են փռում շուրջն իրենց,
Շարժվում կամացուկ,
Տոտիկ ունեն հողի մեջ
Ու կապույտ աչուկներ:
Քարափի տակ այն խաղաղ,
Օդի մեջ մեղմիկ,
Իրար նայում են ուրախ
Երկու ձնծաղիկ:

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

## Գարնան դրոշը

Գորշ է լանջը դեռ սարի,
Գլխին՝ ձյունի պատառիկ:
Ձորում գետը հորդացած,
Սառցաջուր է տանում ցած:

Լերկ են ժայռերը, դեռ լերկ,
Ծառ-թփերը՝ չոր ու մերկ,
Բայց այն ո՞վ է անհամբեր՝
Մետաքս վարսերը թափել,
Ջեռքը պահած բարևի,
Աչքն է գցել արևին:

Ո՞վ է գարնան սիրուց տաք
Դարձել այդպես համարձակ,
Փոքրիկ սրտից թրթռուն՝
Ծաղկած շողեր է փռում:

Բունը փոքրիկ, ծռմռված,
Ժայռերի մեջ մխրճված,
Տաք երգի պես արտույտի,
Ոսկե ժպիտը շուրթին,
Հոնին է ծեռ կածանում՝
Գարնան դրոշ ծածանում:



ԱՐԱՐԱՏ ԵՂԻԿՅԱՆ

## Արեգակի ընտանիքը

Մի քանի հազար փոքր և ինը խոշոր մոլորակներ կազմում են Արեգակի ընտանիքը: Այդ ամենը Արեգակի շուրջը պտտվում է գրեթե նույն հարթության մեջ, տարբեր հեռավորությունների վրա:

Նշված ինը մոլորակներն են՝ Փայլածու (Մերկուրի), Արուսյակ (Վեներա), Երկիր, Հրատ (Մարս), Լուսնթագ (Յուպիտեր), Երևակ (Սատուրն), Ուրան, Նեպտուն և Պլուտոն: Ի տարբերություն մոլորակների հունա-հռոմեական և բաբելական անվանումների, հին հայկական անվանումները դիցաբանական անուններ չեն, այլ մոլորակները բնութագրող սովորական բառեր են: Այսինքն՝ հայկական անվանումները միանգամայն անկախ են և ինքնուրույն, բացի վերջին երեք մոլորակների անուններից, որոնք հայտնաբերվել են ընթացիկ հազարամյակում և, բնականաբար, անվանակոչվել ըստ հունա-հռոմեական ավանդության:

Մոլորակները կարելի է բաժանել երկու դասի՝ երկրանման՝ Փայլածու, Արուսյակ, Երկիր, Հրատ, Պլուտոն, և հսկաներ՝ Լուսնթագ, Երևակ, Ուրան, Նեպտուն: Որպես առավել ուսումնասիրված մոլորակներ՝ ընտրենք յուրաքանչյուր դասից երկուական ներկայացուցիչ՝ Արուսյակ և Հրատ, Լուսնթագ ու Երևակ:

### ԱՐՈՒՍՅԱԿ

Մոլորակը մոտ 1,5 անգամ ավելի մոտ է գտնվում Արեգակին, քան Երկիրը: Իր չափերով ու զանգվածով գրեթե չի տարբերվում մեր մոլորակից, բայց Արուսյակի պայմանները խիստ տարբերվում են

երկրայինից: Արտասովոր է Արուսյակի պտույտը իր առանցքի շուրջը, որը հակառակ է Արեգակի նկատմամբ ունեցած պտույտի ուղղությանը: Նրա պտույտը առանցքի շուրջ հաշվվում է 243 երկրային օր, իսկ Արեգակի շուրջ՝ 225 օր: Արուսյակի մթնոլորտի 95 տոկոսը ածխաթթու է, ճնշումը՝ 90 մթնոլորտ, մակերեսի ջերմաստիճանը՝ 470 աստիճան:

Այդ պայմաններում, իհարկե, կյանքի մեզ հայտնի ձևերը չեն կարող գոյատևել: Պարզվեց նաև, որ ամպերը բաղկացած են ոչ թե սառած ջրի հատիկներից, ինչպես Երկրի մթնոլորտում, այլ հագեցած ծծմբաթթվի կաթիլներից, իսկ թթվածին չկա բնավ: Նման անբարենպաստ պայմաններում չափազանց դժվար է որևէ սարք աշխատեցնել՝ մոլորակը հետազոտելու նպատակով: Այնուամենայնիվ, սովետական գիտնականները կարողացան հաջողությամբ լուծել այդ խնդիրը: Մի քանի ավտոմատ միջմոլորակային կայաններ վերջին տասնամյակում վայրէջք կատարեցին Արուսյակի վրա և շատ կարևոր տեղեկություններ հաղորդեցին Երկիր, այդ թվում՝ նաև մակերևույթի առաջին գունավոր պատկերները:

## ՀՐԱՏ

Հրատը Արեգակից 1,6 անգամ ավելի հեռու է գտնվում, քան Երկիրը: Տարին այնտեղ կազմում է 687 օր, բայց օրվա տևողությունը նույնն է, ինչ Երկրի վրա՝ 24 ժամ: Զանգվածը 10 անգամ է փոքր, իսկ տրամագիծը՝ 2: Մթնոլորտը հիմնականում բաղկացած է ածխաթթվից (95 տոկոս), մնացածը ազոտ, թթվածին, ջրային գոլորշիներ և այլ գազեր են:

Արդեն 20 տարուց ավելի է, ինչ սովետական ու ամերիկյան գիտնականները Հրատն ուսումնասիրում են ավտոմատ կայանների օգնությամբ: Արտակարգ կա-



Հրատն՝ ուղեծրից: Նկարի կենտրոնում երևացող 4 օղակաձև գոյացումները հսկայական հրաբխային լեռներ են, որոնց բարձրությունը հասնում է 15 կմ-ի, իսկ կենտրոնականը ամենաբարձրն է նաև բոլոր երկրանման մոլորակների համար՝ 23 կմ: Մասնագետների գնահատությամբ այդ հրաբուխները գործել են մոտ 100 միլիոն տարի առաջ: Այն ժամանակվա ակտիվությամբ է պայմանավորված, հավանաբար, նկարի ձախ մասում մոլորակի մակերևույթին երևացող ճեղքը՝ մոտ 2700 կմ երկարությամբ, 5—6 կմ խորությամբ: Նկարի ներքևի աջ մասում երևում է Հրատի սառցադաշտերից բաղկացած բևեռագլուխներից մեկը: Ձմռանը դրանց չափերը մեծանում են ի հաշիվ ածխաթթվի սառույցների:



Այս լուսանկարը մեծ անակնկալ էր գիտնականների համար: Գետեր Հրատի վրա՞: Այո, նկարի վրա երևացող ոլոր-մոլոր հետքերը ոչ այլ ինչ են, եթե ոչ իսկական գետերի ոլորքներ: Ճիշտ է, միլիոնավոր տարիներ են անցել այն օրից, երբ այդ հունով ջուր է հոսել, սակայն փաստի կարևորությունը դրանից չի նվազում:



Հրատից նմուշներ վերցնելու պահը



՝Նկարի վրա մենք տեսնում ենք Լուսնթագի մթնոլորտն իրեն բնորոշ հսկայական մրրիկնե-րով, խտտրումներով և այլ գոյացումներով, այդ թվում՝ խորհրդավոր մեծ կարմիր բիծը, որը հայտնի է արդեն 18-րդ դարից և հանդիսանում է մթնոլորտային խտտրում, երկարատև պտու-տամրրիկ, որի կյանքի տևողությունը կարող է կազմել հազարավոր տարիներ, իսկ արտասովոր կարմիր գույնը լուսածին քիմիական էլեմենտի կարմիր տարատեսակն է:



Աստղագետների համար մեծ անակնկալ էր գործող հրաբուխների հայտնագործումը Իոյի վրա:



Երևակի օղակը

ևոր տեղեկություններ հաղորդեցին հատկապես ամերիկյան «Վիկինգ—1» և «Վիկինգ—2» կայանները 1976-ի ամռա-նը:

Ժամանակին Հրատի պայմաններն ա-վելի բարենպաստ էին, օդի ճնշումը, ջերմաստիճանը ավելի բարձր էին, և ջուրը կարող էր լինել հեղուկ վի-ճակում: Այսօր էլ Հրատի վրա կան բա-վական քանակությամբ սառույցի պա-շարներ: Հասարակածի վրա կեսօրից 1 ժամ հետո գրանցվել է 27 աստիճան տաքություն: Սակայն ցածր մթնոլորտա-յին ճնշումից սառույցը միանգամից գո-լորշիանում է: Օրվա ընթացքում ջերմաս-տիճանի տատանումները կարող են անց-նել 100 աստիճանից: Ընդհանրապես Հը-րատի վրա շատ ցուրտ է, և միջին ջեր-մաստիճանը նույնիսկ ամռանը շատ ցա-ծըր է զրոյից: Բայց սառած վիճակում էլ ջուր շատ կա: Հաշվարկները ցույց են տալիս, որ բևեռագլխերի սառույցնե-րը հեղուկ վիճակում 10 մետր շերտով կծածկեին ողջ մոլորակի մակերեսը: Մթնոլորտային ճնշումն էլ, որ այժմ երկրայինի 1 տոկոսն էլ չի կազմում, կախված է օդում ածխաթթվի պարունա-կությունից: Հաշվարկները ցույց են տա-լիս, որ եթե բևեռագլխերի ածխաթթուն լրիվ գոլորշիանա, Հրատի մթնոլորտի ճնշումը կմոտենա երկրայինին: Այսօրվա պայմանները նման երևույթ բացառում են, բայց ինչ-որ ժամանակ այն անկաս-կած տեղի է ունեցել:

Հարկ է նշել նաև, որ Հրատի և ընդ-հանրապես մյուս մոլորակների կլիմանե-րի ուսումնասիրությունը չափազանց կա-րևոր է առաջին հերթին հենց Երկրի կլի-ման պայմանավորող գործոնները ավելի լավ հասկանալու համար, և այդ տեսա-կետից միանգամայն արդարացվում են մոլորակների հետազոտությունների վրա կատարած ծախսերը: Բայց «Վիկինգնե-րը» պետք է պատասխանեին և ուրիշ, ոչ պակաս կարևոր հարցերի, այդ թվում նաև, թե Հրատի վրա արդյոք կա՞ կյանք, թե ոչ: Ցամաքած գետերի հուների նը-կարներից կարելի էր ենթադրել, որ գու-ցե Հրատի վրա կյանք կա, և ավտոմատ կայանների վայրէջքից հետո մասնա-գետները մեծ եռանդով գործի անցան: Գիտնականները հույս ունեին գտնել գո-նե պարզագույն մանրէներ: Սակայն ավ-տոմատ սարքերի միջոցով մոլորակի մա-կերևույթից վերցված նմուշները են-

թարկելով քիմիական ու կենսաքիմիական վերլուծության, պարզ դարձավ, որ Հրատի վրա կյանք չկա, նույնիսկ մանրէների տեսքով: Ավելի ճշգրիտ՝ կյանք չկա «Վիկինգների» վայրէջքի տեղում: Եվ միայն Երկրի լաբորատորիաներում կատարելիք մանրակրկիտ վերլուծությունը կարող է վերջնականապես պարզել այդ չափազանց հետաքրքիր ու կարևոր առեղծվածը: Դա կլինի, հավանաբար, 10—20 տարի հետո, երբ մենք ի վիճակի լինենք ավելի կատարելագործված ավտոմատ կայաններ ունենալ, որոնք Երկիր կբերեն Հրատի մակերևույթի նմուշները:

### ԼՈՒՍՆԹԱԳ

Լուսնթագը 5.2 անգամ ավելի հեռու է Արեգակից (սարվա տևողությունը կազմում է մոտ 12 երկրային տարի), 300 անգամ ավելի մեծ զանգված ունի և 10 անգամ ավելի մեծ շառավիղ, քան Երկիրը: Նյութի վիճակն էլ ավելի մոտ է հեղուկին: Մոլորակն իր առանցքի շուրջը պտտվում է մոտ 10 ժամվա ընթացքում:

Հսկա մոլորակները ուսումնասիրելու նպատակով 1978-ին ամերիկյան գիտնականները արձակեցին երկու միջմոլորակային ավտոմատ կայաններ՝ «Վոյաջեր—1» և «Վոյաջեր—2»: Այդ պահին մոլորակների դասավորությունը չափազանց բարենպաստ էր «մեծ ճանապարհորդություն» կատարելու համար, այսինքն՝ մոլորակների ձգողական դաշտերի միջոցով կայանները հերթով կարող էին անցնել բոլոր հսկա մոլորակների մոտով, առանց լրացուցիչ վառելանյութ ծախսելու:

Եվ ահա 1979-ի գարնանը «Վոյաջեր—1»-ը, իսկ մի քանի ամիս հետո 2-րդը, անցնում են Լուսնթագից մոտ 100000 կմ հեռավորության վրա:

Աստղագետների համար մեծ անակընկալ եղավ գործող հրաբուխների հայտնագործումը Լուսնթագի արբանյակներից մեկի՝ Իոյի վրա:

Հայտնի է, որ հրաբխային ակտիվության անհրաժեշտ պայման է ընդերքի հալված նյութը:

Երկրի համար, օրինակ, պահանջվող ջերմության հիմնական քանակը ստացվում է ռադիոակտիվ էլեմենտների տրոհումից: Զանգվածի փոքրության պատճառով նույն տրոհումը Իոյի ընդերքում ջերմության անհրաժեշտ քանակ չի ապահովում: Հավանաբար, մնացածը լրացվում է Իոյի կեղևում Լուսնթագի ձգողականությամբ պայմանավորված լարումները: Ապշեցուցիչ է հրաբխային գործունեության թափը՝ ժայթքող սյան բարձրությունը անցնում է 200 կիլոմետրից, այսինքն՝ 10 անգամ ավելի Երկրի հրաբուխներից: Իոյի վրա հայտնաբերվեցին միաժամանակ գործող ութ հրաբուխներ: Ժայթքող նյութը բաղկացած է ծծումբից և ծծումբի միացություններից, որոնք էլ պայմանավորվում են մակերևույթի գույները:

### ԵՐԵՎԱԿ

Վերջին տասը տարում պարզվեց, որ Երևակը միակ մոլորակը չէ, որ օղակ ունի: Հզոր լուսաընդունիչների օգնությամբ ապացուցվեց օղակների առկայության փաստը նաև Լուսնթագի և Ուրանի շուրջը: Ճիշտ է, դեռ անցյալ դարի վերջում գիտնականները ապացուցեցին, որ օղակն ամբողջական չէ, այլ տարբեր չափերի քարաբեկորների մի բազմություն է, որ պտտվում է մոլորակի շուրջը: Օղակի լայնությունը մոտ 60000 կմ է, միջին հաստությունը 1 կմ, չնայած ծայրերին այն կարող է հասնել և 10 կմ-ի:

Հավանաբար, այդ քարաբեկորները այն նախանյութի մնացորդներն են, որից ժամանակին առաջացել է ինքը՝ Երևակը:

Երևակը ունի 17 արբանյակ, որոնք նման են Լուսնթագի արբանյակներին, բացառությամբ՝ Տիտանի, որն ունի ազոտից բաղկացած մթնոլորտ և չափերով էլ գերազանցում է Լուսնին:

Մոլորակների ավտոմատ համակարգերի միջոցով կատարված հետազոտությունները վերջին 20 տարվա ընթացքում լրիվ փոխեցին մեր պատկերացումները դրանց մասին: Գիտությունը հարստացավ չափազանց կարևոր տեղեկություններով, որոնք այսօր հնարավորություն են տալիս մշակել Արեգակնային համակարգի առաջացման և զարգացման ավելի ճշգրիտ պատկերը:

Վերջապես, եթե նույնիսկ մի կողմ թողնենք զուտ աստղագիտական խնդիրները, այնուհանդերձ մոլորակների մանրակրկիտ հետազոտումը արդարացված է արդեն միայն այն փաստով, որ հնարավորություն է տալիս մեզ համեմատության միջոցով ավելի լավ ճանաչել մեր Երկիրը, ավելի լավ հասկանալ այստեղ տեղի ունեցող երևույթները:

## ԺՊԻՏՆԵՐ



● Հենրի Հերցը՝ ռադիոալիքների հայտնագործողը, պատանի հասակում սիրում էր զբաղվել խառատությամբ: Շատ տարիներ անց դպրոցական ուսուցիչը հետաքրքրվեց նրա ճակատագրով:

— Օ, նա դարձել է նշանավոր ֆիզիկոս,— պատասխանեցին նրան:

— Ափսոս: Կարող էր դառնալ հրաշալի խառատ:

● Ամրապնդեք ձեր հիշողությունը: Դրա համար խորհուրդ է տրվում ամեն օր հիշել այն, ինչը պետք էր կատարել նախորդ օրը:

● — Ինչո՞ւ ես լալիս, տղաս:

— Ես կորցրել եմ իմ վեց պենսը:

— Ահա քեզ վեց պենս, միայն թե լաց մի լինի:

Տղան վերցնում է վեց պենսը և շարունակում լաց լինել:

— Իսկ հիմա՞ ինչու ես լալիս:

— Ախր, սըր, եթե ես կորցրած չլինեի իմ վեց պենսը, հիմա կունենայի տասներկու պենս:

● Չարլին անկարգություն էր արել: Մայրիկն ուզում էր նրան ապտակել, բայց նա թաքնվեց մահճակալի տակ: Մայրիկը բավական գեր էր և չկարողացավ մտնել այնտեղ: Չարլիի հայրիկը նիհար մարդ էր, երբ նա տուն եկավ, մտավ մահճակալի տակ, որպեսզի դուրս բերի որդուն:

Չարլին նրան տեսնելով, ասաց.

«Հայրիկ, նա քե՞զ էլ էր ուզում ապտակել»:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● ԱՄՆ-ի ինժեներները ստեղծել են ինֆրակարմիր անջատիչ: Առաստաղին ամրացված այդ սարքը արձագանքում է մարդկային մարմնի ջերմությանը և վառվում հենց որ մարդը ներս է մտնում: Իսկ երբ մարդիկ սենյակից դուրս են գալիս, լույսը ավտոմատ կերպով անջատվում է: Այսպիսով, լրիվ բացառվում է մոռացկոտությունը, որ հատուկ է շատերին: Արդյունքում՝ նոր սիստեմը ընդունակ է խնայելու մինչև 50 տոկոս էներգիա:

● Պրագայի փողոցներում հայտնվել են բիոտաքսիներ, որոնք արտաքինից ոչընչով չեն տարբերվում սովորական ավտոմեքենաներից, սակայն նրանց շարժիչը աշխատում է բիոգազով, որը ընտացվում է կեղտաջրերի մաքրման համար նախատեսված կառույցներում: Այդ կառույցների մաներէներով լցված ջրավազաններում ակտիվ կերպով մեթան է գոյանում: Գազի մեկ լիցքավորումը բավարարում է 250 կմ ճանապարհի համար: Այդպիսի վառելիքը շատ էժան է, բացի դրանից, այն բարձրացնում է շարժիչի օգտակարության գործակիցը և չի կեղտոտում շրջապատը:

● ՄԱԿ-ի մասնագետների կարծիքով երկրագնդի բնակչության թիվը արդեն այս տարի կանցնի 5 միլիարդից, դարի վերջում կհասնի 6 միլիարդի, իսկ 2010 թվականին՝ 7 միլիարդի:

● Ճապոնիայում հետզհետե ավելանում է ռադիոսիրողների թիվը: Եվ դա ստիպում է եթերը մաքուր պահելու նպատակով խստացնել ռադիոկապի մեջ մտնելու կանոնները: Նա, ով ցանկանում է ռադիոսիրող դառնալ, այժմ պետք է քննություն հանձնի ռադիոինժեներիայից, ալիքների ֆիզիկայից, ռադիոապարատների ղեկավարումից և էլի մի քանի ոչ պակաս բարդ առարկաներից:

Վերջերս բոլոր քննությունները հաջող հանձնեց Իցուկա Մացունագան: Աղջիկն ընդամենը 5 տարեկան է:

## ԺԱՄԱՆՑ



**Ուղղահայաց**

1. Քաղաք Ռումինիայում: 3. Քիմիական տարր: 4. Մարոկկոյի մայրաքաղաքը: 6. Մայրաքաղաք Հարավային Ամերիկայում: 7. Հայ սովետական գրող, լրագրող: 10. Վասպուրականի աշխարհի կենտրոնը: 11. Գերմանացի կոմպոզիտոր: 14. Շախմատային ֆիգուր: 15. Քաղաք Հայկական ՍՍՀ-ում: 18. Քաղաք պատմական Կիլիկիայում:

**Հորիզոնական**

2. Քաղաքացիական կռիվների հայ հերոս: 5. Նաիրի Զարյանի վեպերից: 8. Երկրաչափական մարմնի բնորոշ հիմնական հասկացություններից: 9. Մայրաքաղաք Աֆրիկայի արևելքում: 12. Նահանգ ՀԱՀ-ում: 13. Թաթարական ԻՍՍՀ-ի մայրաքաղաքը: 16. Րաֆֆու «Սամվել» վեպի հերոսներից: 17. Նահանգ Մալայզիայում: 19. Ծաղիկ: 20. Սովետական արևելագետ, հայագետ, լեզվաբան:

Կազմեց ԱՐՏԱԾ ԱՅՎԱԶՅԱՆԸ
Վ. Տերյանի անվ. դպրոց, 7-րդ դասարան

● Մայրիկը Սոնային ու Հակոբիկին հանձնարարել էր փոշեկուլով մաքրել սենյակն ու ներկել բակի նստարանը: Սակայն գործ անելու փոխարեն, նրանք շատախոսում էին: Հանկարծ հնչեց հեռախոսի զանգը. Տիգրանն էր, ժամը 4-ի համար հրավիրում էր կինո:

— Բայց արդեն ժամը երկուսն է, իսկ մենք դեռ պետք է ներկենք նստարանը, փոշեկուլով մաքրենք սենյակը, տաքատս էլ արդուկած չէ: Յուրաքանչյուրը մեկ ժամվա գործ է, իսկ մենք ընդամենը մեկ վրձին, մեկ փոշեկուլ ու մեկ արդուկ ունենք: Կինոթատրոն էլ կես ժամում հազիվ հասնենք: Ինքդ էլ տեսնում ես, որ անհնար է հասցնել,— ասաց Հակոբիկը:

— Հնարավոր է,— ասաց Տիգրանը:

— Քեզ համար ամեն ինչ էլ հնարավոր է. 10 տարիդ լրանալու հաջորդ օրը կարող ես հայտարարել, թե մյուս տարի 11-ի փոխարեն 12 տարեկան ես դառնալու, թե 10 լուցկու հատիկով կարելի է միանգամից երկու հնգանկյունի ու հինգ եռանկյունի կառուցել...

— Հնարավո՛ր է,— պնդեց Տիգրանը,— եթե...

Հանկարծ հեռախոսակապն ընդհատվեց: Գուցե դուք ասեք, սիրելի դպրոցականներ, թե ինչպես են Հակոբիկն ու Սոնան բաշխելու աշխատանքը միմյանց միջև, որպեսզի ժամը 2-ից 4-ը հասցնեն կատարել մայրիկի հանձնարարությունները, արդուկեն տաբատը և չուշանան կինոյից:

Եթե համոզվեք, որ այդ ամենը հնարավոր է և Տիգրանը սուտ չի ասում, փորձեք նաև գլուխ հանել լուցկու հատիկների և ծննդյան օրվա մասին նրա «ասույթներից»:

---

## «ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ



---

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ.

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

